МЕЖДУНАРОДНЫЙ ДВУЯЗЫЧНЫЙ РУССКО-АРМЯНСКИЙ ЕЖЕМЕСЯЧНЫЙ ЖУРНАЛ



# Գործարար

## ГОРЦАРАР

ЯНВАРЬ-МАРТ № 1-3 (177-179) 2014 г.





## В КАЛУГЕ ЧЕСТВОВАЛИ ВЕТЕРАНОВ АФГАНСКОЙ ВОЙНЫ

⇒2

# ОПАЛЕННЫЕ ПЛАМЕНЕМ АФГАНА





Генерал-лейтенант Норат Тер-Григорьянц.







В Концертном зале областной филармонии состоялось торжественное мероприятие, посвященное 25-летию вывода советских войск из Афганистана. Заместитель губернатора Юрий Кожевников, обращаясь к участникам боевых действий, высоко оценил их личностные качества, а также весомый вклад в военно-патриотическое воспитание молодежи. В рамках мероприятия двадцати воинам-интернационалистам Юрий Кожевников вручил региональные награды.

Среди тех, кто принял участие в этом торжестве, находился генерал-лейтенант Норат Тер-Григорьянц. С 1981 по 1983 год он занимал должность начальника штаба 40-й армии, базировавшейся в Афганистане.

Вот что рассказал он:

*– В 1978 году меня приняли в Академию Генерального штаба, которую я с отличием закончил в 1980 году. Затем в Туркестанском военном округе, в Ташкенте, был назначен на должность первого заместителя начальника штаба округа. И буквально через пару недель попал в Афганистан, где первый год руководил оперативной группой Туркестанского округа в Кабуле.*

*Мы занимались не только планированием боевых действий, но отвечали за обеспечение страны всем жизненно необходимым (поставки из СССР шли через Термез), а также за обеспечение нашей советской 40-й армии и вооруженных сил ДРА (Демократической Республики Афганистан). На протяжении 10 месяцев я практически ежемесячно прилетал в Москву для доклада министру обороны маршалу Устинову по планам боевых действий.*



*Где-то в середине 1981 года я дал согласие занять должность начальника штаба 40-й армии и оставался на этой должности два года, итого в общей сложности прослужив три года в Афганистане как участник боевых действий. Мне довелось планировать крупнейшие операции афганской войны и участвовать в их проведении, в том числе против всем известного Ахмад Шаха Масуда. По этим операциям вышло очень много книг, написанных на основе архивных материалов. Сейчас некоторые мои операции изучают слушатели военных академий Российской Федерации. Наши офицеры, служащие в вооруженных сил Армении, говорили мне: по вашей Панджшерской операции в Гиндукуше мы изучали тактику подготовки и ведения боевых действий в горах. Это правильно, так как нагорный и горный театр военных действий не очень хорошо отражен в советских боевых уставах, и мы на базе афганского опыта разработали очень много тактических приемов и элементов оперативного искусства.*

### НАША СПРАВКА

В настоящее время на территории Калужской области проживает более двух тысяч ветеранов Афганской войны, около тридцати из них – инвалиды. Пятьдесят наших земляков, принимавших участие в вооружённых конфликтах в Афганистане, погибли в боях, двое – пропали без вести.

*Фото Николая ПАВЛОВА, Сергея КОНСТАНТИНОВА.*

# Հայոց արշալույսները թող ծագեն մոր աղոթքով



**Եթե երկրագնդի մակերեւույթը միանգամայն հարթ լիներ, օվկիանոսն այն կծածկեր մոտ 2700 մ հաստություն ունեցող ջրի շերտով:**

***Հարոլդ ԴՈՒԲԱԿՍ,***
***օվկիանոսագետ (ԱՄՆ)***

**Եթե երկրագնդի մակերեւույթը միանգամայն հարթ լիներ, եւ կանգուն մնար միայն Փամբակի լեռնաշղթայի Մայրասարը, ապա երկրագունդ ջրաշխարհին յոթ մետր բարձրությունից կնայեր Էդվարդ Խլղաթյանի խոյացրած Մոր հուշարձանը՝ մշտարթուն, աշխարհի ու նրա բախտի համար աղոթող էությամբ:**

***Սամվել ԽԱԼԱԹՅԱՆ***

### Մայրության արձանը՝ «Դյուցազնագրքում»

Հաճելի լուր ստացվեց Երևանից. «Դյուցազնագիրք» դյուցազունների ասոցիացիայից հայտնում են՝ Փամբակի լեռնաշղթայի լեռան գագաթին՝ ծովի մակերևույթից 2707 մետր բարձրության վրա կանգնեցված Մայրության արձանը (քանդակագործ՝ Սարգիս Ղարիբյան) ճանաչվել է նվաճում և գրանցվել ՀՀ «Դյուցազնագրքում»:

Սա հիանալի առիթ է՝ մեկ անգամ ևս անդրադառնալու Մայրասարին, Մայրության արձանին և դրանց վերաբերյալ խոհերն ու մտորումները կիսել ընթերցողի հետ:

Երկրագնդի բազմանուն ու բազմահազար հուշարձանների թվում հառնում է ևս մեկ՝ Մոր հուշարձանը՝ աննախադեպը, եզակին, վեհն ու միակը, անկրկնելին՝ ինչպես յոթ հրաշալիքներից յուրաքանչյուրը, բայց և առավել նվիրական ու հարազատ:

Բոլոր մոլոր վշտերն ուներ մայրս՝ մոլոր մայրերի,
Ասես խղճի խտացվածքն էր մայրս՝ բոլոր մայրերի,
Ձեզ եմ երգում, մայրեր, մորս սրբությունը երգելով,
Մայրս տեսիլն էր յոթնացեղ արծիվ ու լոր մայրերի:

Մշեցու թոռ, «Հայփոստի» Վանաձորի մասնաճյուղի տնօրեն, «Մշո զարմ» գիտակրթական հկ նախագահ Էդվարդ Խլղաթյանի մայրը՝ թիվ 18 դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Օֆելյա Հարությունյանն էլ «բոլոր մոլոր վշտերն ուներ մայրերի» ու ասես նրանց «խղճի խտացվածքն» էր, սրբության սրբոցը: Երևի


«ԴՅՈՒՑԱԶՆԱԳԻՐՔ» ԴՅՈՒՑԱԶՈՒՆՆԵՐԻ ԱՍՈՑԻԱՑԻԱ

ԴՅՈՒՑԱԶՆԱԳԻՐ

Տրվում է

Էդվարդ Խլղաթյանին

առ այն, որ նա Փամբակի լեռնաշղթայի Մայրասար լեռան վրա
(ծովի մակերևույթից 2707 մետր բարձր) կանգնեցրել է Մայր արձանը
(2.3 մետր, քանդակագործ՝ Սարգիս Ղարիբյան):
Սույն նվաճումը գրանցված է ՀՀ «Դյուցազնագիրք» գրքում:

ՆԱԽԱԳԱՀ՝ ՎԱՐԴԱՆ

հենց սրանով պիտի պայմանավորել մայրապաշտ որդու խելահեղ որոշումը՝ Մայրության արձան կանգնեցնել քաղաքի մերձակա, բարձրադիր սարերից մեկի գագաթին: Ընտրությունը կանգ առավ Փամբակի լեռնաշղթայի Ղարադաղ (Սև քար) լեռան վրա: Բայց ինչո՞ւ օտարահունչ, թուրքական Ղարադաղ: Եվ Էդ. Խլղաթյանի առաջարկով սարը վերանվանվեց Մայրասար: Սա Էդ. Խլղաթյանի կողմից մի յուրահատուկ դաս էր երիտասարդությանը: Կարիք կա՞ արդյոք հիշատակելու, թե ինչպիսի խոչընդոտներ են հաղթահարվել Էդվարդ Խլղաթյանի կողմից բաղձալի նպատակին հասնելու համար: Սակայն ամեն մի դժվարություն ոչինչ է այն հզոր կամքի ու սլացքմտքի առջև, որ առաջնորդում է նրան: Այդ կամքն ու միտքը ծնունդ են մոր նկատմամբ ունեցած որդիական մեծ սիրո և անհատակ երախտագիտություն: Ու Մայրասարում հպարտ կանգնած է 2,3 մետր բարձրությամբ՝ մոր բետոնակուռ արձանը, բոլո՛ր մայրերին նվիրված արձանը: Հպարտ ու գեղեցիկ, որն արծվենի հայացքով իր երկնամերձ բարձունքից մշտապես հսկում է լեռան ստորոտում փռված Վանաձորին, աշխարհին, ու իր օրհնանքն է սփռում, որ խաղաղ ու անդորր լինի մարդկանց հոգիներում, որ բոլորի հոգիները ջերմանան սիրուց: Մայրակա՛ն սիրուց: Ու մինչ այդ իր բարձունքում միայնակ խոկացող սարը դարձավ ուխտատեղի, ուխտավայր, ուր ամեն տարի՝ սեպտեմբերի երկրորդ կիրակի օրը կազմակերպվում է ուխտագնացություն: Գալիս են ծանոթ ու անծանոթ, վանաձորցի և ոչ վանաձորցի՝ հյուրեր, Հայաստանի տարբեր բնակավայրերից հավաքվում են՝ մեծարելու մորը:

Լոռվա աշխարհում ամեն լուսաբացի, արևի առաջին ճառագայթները լուսավորում են ոչ միայն մեր լեռնագագաթները, այլև Հայոց մոր լուսապսակ ճակատը:

Այստեղ հայոց արշալույսները ծագում են մոր աղոթքով...

Եվ եթե Էդվարդ Խլղաթյանն այս մեծագործությամբ իր երախտագիտությունն ու սերն է հավերժացրել իր և աշխարհի բոլոր մայրերի նկատմամբ, ապա մենք, յուրովի, հպարտանում ու պանծալի հրճվանք ենք ապրում՝ այդ կոթողի մեջ տեսնելով նաև յուրաքանչյուրիս սերն ու երախտագիտությունը մեր մայրերին:

Ամեն ուխտագնացության, մոր արձանի մոտ, Մայրասարի բարձունքում տեղադրվում է մի նոր խաչքար: Դրանց թիվն այսօր ութն է՝ խաչքարագործ վարպետներ Սերգեյ Դանիելյանի և Բոգդան Հովհաննիսյանի ինքնատիպ աշխատանքներից: Կգա ժամանակ, և այստեղ կձևավորվի խաչքարադաշտ: Բայց ոչ մեռելոց, այլ պարողաց: Քանզի խաչքարերը նաև լինելության, հարատևության խորհուրդ ունեն:

Եվ այսպես՝ Մայրասարի բարձունքում՝ ծովի մակերևույթից 2707 մետր բարձրության վրա վեր խոյացած «Մայրության» արձանը ճանաչվել է նվաճում և գրանցվել ՀՀ «Դյուցազնագրքում»: Սա եզակի կոթող է, որն արժանանում է նման գնահատանքի, պատվի: Բայց սա միայն տեխնիկական նվաճում չէ, այլ նաև բանականության, բարոյական արժեքների հաղթանակ: Ո՞վ գիտե՝ գուցե նաև սա՞ է նկատի ունեցել դյուցազունների ասոցիացիան՝ նման որոշում կայացնելով: Ո՛չ թե միգուցե, հաստա՛տ: Շնորհավո՛ր, բոլոր մայրապաշտ զավակներ:

***Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ***

*Ու գամված ենք այս հողին...*

# Հարցազրույց Ալվարդ Պետրոսյանի հետ

**Սերը գնաց այս երկրից,**
**Ատելությունն ուսն առած,**
**Փուչ հեղեղն է բառերի**
**Տապից գժված իջնում ցած:**

***– Անձնական եւ անանձնական ցավի, ողբերգության դրոշմով ձեր բանաստեղծությունները Ֆեյսբուքում շատերին անակնկալի բերեցին: 2003-ին գրված բանաստեղծությունները չափազանց այժմեական էին ու ճշգրիտ արտացոլում էին այսօրվա իրողությունները, հայ մարդուն համակած տրամադրությունները: Արձագանքը բուռն էր, անդրադարձն՝ անմիջական՝ ձեզ տանջող ցավը մեզ էլ է պատել:***

– Գիտեք, կարգին չարություն էլ չկա, չարության մի չափ կա, որ ստեղծագործության մղիչ ուժ է, մրցակցության, առաջ ընթանալու, հաղթելու, սեփական գաղափարները, ինքնությունը հաստատելու հնարավորություն է: Չկա դա, փոխարենն աիավոր կենդանական չարություն կա, որը մարդկային չի, ոչնչացնող է, տգեղ: Ու սերն էլ մի բան չի, դալուկ, թույլ, դատարկ բառերով քողարկված մի բան է: Երկու շատ հզոր՝ մարդուն հարիր զգացմունքներ այսօր լավը չեն:

***– Հին ու Նոր տարվա սահմանագծին՝ Ֆեյսբուքում նոր կյանք ստացած վերոհիշյալ եւ բազում բանաստեղծությունների տողատակերում ընդհանուր առմամբ հասկանում ենք եւ զգում, թե ինչ մտորումների, խոր խոհերի մեջ է Ալվարդ Պետրոսյանը:***

– Քանի որ հրապարակային-հասարակական ակտիվ կյանքով չեմ ապրում, տնից դուրս չեմ գալիս, ակնդետ հետեւում եմ ինչ է կատարվում, քանզի անտարբեր չեմ կարող նայել: Ինձ բացակա չդնեք ճիչ կար ներսումս, թե՝ ես անզոր փակված չեմ վշտիս մեջ: Այո, անզորությունից որոշեցի 2003 թվականին հրատարակված իմ գրքից բանաստեղծություններ տեղադրել Ֆեյսբուքում: Հանկարծ հասկացա, որ այն, ինչ ուզում եմ ասել, գրքում կա, արդեն ասել եմ: Չգիտեմ, որքանով են տաղանդավոր այդ բանաստեղծությունները, բայց գիտեմ, որ շատ անկեղծ են: Հաճելիորեն զարմացա, որ վայրկենական արձագանք եղավ հանրության կողմից: Մեկնաբանություններ, նամակներ էլ կային՝ ինձ փաստորեն դեռ փնտրում են ասպարեզում: Որքան էլ պարփակված լինես ինքդ քո մեջ, դա միշտ հաճելի է: Ընդ որում, հետաքրքիր բան կա՝ մի կողմից ասպարեզում սերունդ է, որը մի քայլ այն կողմ կանգնած իրենից ավագներին չի ճանաչում, մյուս կողմից՝ օրինակ, Ֆեյսբուքում բանաստեղծություններիս հանդեպ բազմաթիվ երիտասարդների արձագանքն ինձ հույս ներշնչեց, հասկացա՝ ինչ-որ պորտալար դեռ կապում է նախորդ սերնդին եկողների հետ:

***– Ափսոսիկ, 2003-ին գրված եւս մեկը, որն այսօր նաեւ՝ ի հեճուկս «դեպի Մաքսային միություն» կարգախոսը նոստալգիկ հրճվանքով ընդունողների լինի ասես՝ Ազատություն, բեռ ես դարձել ուսերիս Վանդակները մեզ են կանչում թովելով...***

- Պիտի կարողանանք հասկանալ, թե ինչ



է նշանակում ազատությունը, անկախությունը, հայրենիքը: Խնջույքի սեղան չի: Այդ բանաստեղծությունը դուք հիշատակեցիք «ազատություն, բեռ ես դարձել», բայց դա սարսափելի բան է, որ մարդն իր ազատությունը բեռ դարձնի, տեր ուզի, Մաքսային միության գնացող մի զանգվածը տեր ցանկացողներն են, ոչ թե հաշվարկել են, թե դա է մեզ անհրաժեշտ: Այս զանգվածն է ինձ վախեցնում, ոչ թե այսօրվա քաղաքական վճիռը: Այնքան պայմանագրեր են կնքվել: Բայց դա դեռ վերջը չէ, ստրկամտությունն է վերջի սկիզբը: Այս խնդիրը մեր ազգի գլխին Մաքսային միություն գնալու որոշումով չի, որ սկսվել է: Սա մի քանի հարյուրամյակ սապատ դարձած հոգեվիճակ է, որն ինձ շատ վիրավորում է: Ինքս կողմնակից եմ Մաքսային միության կազմում Ռուսաստանի Դաշնության հետ լինելուն, նույնքան հարգանքով եմ վերաբերվում (թեպետ, չեմ հասկանում) Եվրամիության նկատմամբ բաղձալի ցանկություններ ունեցող մարդկանց, սակայն այս բոլորի մեջ խելացի, հաշվարկված, վերլուծված միտք հասարակության մեջ չտեսա. ինչո՞ւ, ո՞րն է մեզ պետք հարցը եւ պատասխանը չկա: Եվրոպային միանալու մեջ քաղքենիական գրգիռ կա, որն ինձ զարմացնում է: Թե ինչու են հայերն անընդհատ ուզում ձերբազատվել իրենց արեւելյան արմատներից, չեմ հասկանում: Արեւն արեւելքից դուրս է գալիս, Արեւելքում մայր է մտնում: Արեւելքը խորությամբ չպեղված, չուսումնասիրված, չգնահատված աշխարհ է, ընդամենը տուրիստական չափանիշներով են գնահատում, այնինչ մարդկության ստեղծած ամենակարեւոր ինստիտուտներն Արեւելքում են ձեւավորվել: Ահռելի մշակութային ժառանգություն, քաղաքակրթային հսկայական հետքեր թողած Արեւելքից ինչու ենք ուզում ձերբազատվել. այս կերպ դադարում ենք մաքուր արեւելցի լինելուց, եվրոպացի էլ չենք դառնում: Եվրոպան ինքն է թակարդն ընկել իր ազահ ստամոքսի պատճառով, որովհետեւ ամեն ինչ կուլ է տվել ու չի մարսել:

***– Իսկ որքանով են մյուս՝ Մաքսային միությանը ձգտողների ցանկություններն արդարացված, ի վերջո, այսօր մեր իսկ պատմության բազմաթիվ տխուր էջերի մեջ Ռուսաստանի մասը խառն է: Ցավոք, այս անակնկալ որոշումը մի տեսակ ժողովրդի թիկունքում կայացվեց... Ընդհանրապես, այս համաեվրոպայան մերոնք որքանո՞վ են հաշվարկել մեր իսկ երկրի շահերն ու առաջնահերթությունները:***

– Ըստ իս, բոլորովին հաշվարկված չէ. անկեղծ ասած՝ զարմացած եմ, որ մեզանում մի ստվար հատված ուղղակի քանի հարյուրամյակ արդեն չի ցանկանում վերլուծել, թե ինչն է մեզ ձգում դեպի Ռուսաստան, որն է մեր շահը՝ ստրուկի պես զոմբիացված դեպի Ռուսաստան գնա՞լը, թե՞ ազգային շահի հաշվարկը: Գուցե ինչ-որ փոքր խումբ նստել-հաշվարկել է, ընդ որում, առանց ժողովրդին նախապատրաստելու: Այս կարգի հսկա անակնկալ պետք չէ տարերային վիճակում գտնվող ժողովրդին, հասարակությանը մատուցել: Ընդ որում, երբ ասում եմ տարերային, գերլարված ժողովուրդ, հասարակություն, ուզում եմ նաեւ ավելացնել, որ սա միայն մեզ չէ, որ հատուկ է: Այս արմագեդոնի, կատակլիզմի սպասող ժողովուրդները ողջ աշխարհում են: Այո, ընկճախտի մթնոլորտ է իջել մարդկությա՞ն վրա. Մարս թռչելը այդ հեղձուկից չէ՞: Ասում են չէ՞ երբ քնում է գիտակցությունը, արթնանում են հրեշները. երբ հասարակության գիտակցությունը չի մասնակցում այս գործընթացին, հաշվարկներին, թե ինչն է երկրի համար կարեւոր եւ ձեռնտու, նման անակնկալներն անպայման բացասական արձագանք են ունենում, քանզի ավելացնում են անորոշության չափաբաժինը: Դեպի Մաքսային միություն գնացողների 80 տոկոսը պարզապես հին սովորությամբ Ռուսաստանի մեջ փրկիչ է տեսնում, ոչ թե՝ գործընկեր, ոչ թե՝ արժանապատվորեն ասում է, դու հսկա Ռուսաստանն ես, բայց ես էլ հնամենի, խիստ տարբեր, քաղաքակիրթ ժողովուրդ եմ՝ պատմություն ունեցող ազգ, որը թեպետ փոքրիկ, բայց արժեքավոր ադամանդ է: Մենք չենք կարողանում մեր ադամանդը ներկայացնել, ասել, որ այստեղ բաներ կան, որ ուրիշ ոչ ոք այս տարածաշրջանում չի տիրապետում. հայկական գործոնը մենք չենք կարողանում հավուր պատշաճի մատուցել: Վրացիներն իրենց ջրիկ գինին ու ջրիկ մանդարինին ավելի թանկ են վաճառում, քան մենք մեր ադամանդը: Այն ադամանդը, որ կոչվում է հայկական գործոն: Այն ադամանդը, որով մենք կարողացել ենք Ատլանտի նման Արեւելք-Արեւմուտք խաչմերուկում երկնակամարը պահել մեզ վրա քրիստոնեական քաղաքակրթության պատվար լինելով:

***– Մուսուլմանական աշխարհն այսօր ավելի քան երբեւէ համախմբվում է, ասես սրբազան պատերազմի շեմին ենք, իսկ ի՞նչ է անում քրիստոնեական աշխարհը:***

– Ցավալի բան պիտի ասեմ՝ հսկայածավալ քրիստոնեական աշխարհը երբեք մեր մեջքին կանգնած չի եղել, համերաշխություն երբեք չի եղել:

***– Մենք հիմա խոսում ենք դրսի աշխարհին մեր ունեցածը ներկայացնել չկարողանալուց, բայց արդյո՞ք մեր ներսում կարողանում ենք գնահատել լավը, տաղանդավորն ու արժեքավորը: Իզուր չի, որ մեզանում հաճախ են հիշում ու կրկնում***

➲5

4Ծ

*«գնա մեռի, արի սիրեմ» ասացվածքը:*

–Դառը ասացվածք է: Դե որ կարողանայինք գնահատել այն, ինչ ի պահ է տրվել մեզ, կկարողանայինք առետուր էլ անել: Շատ հեշտ ենք տրվել: Ամենացցուն փաստը՝ մենք սովետական կայսրության միակ երկիրն էինք, որ կարողացանք իսկապես, մեր արյան գնով ապացուցել, թե մեր փրկությունը մեր ոգու մեջ է, այլ ոչ՝ կարմիր բանակի, կարողացանք գործոն դառնալ, կարողացանք հաղթանակած մտնել երրորդ հազարամյակ, կարողացանք, բայց՝ մեր առաջին նախագահի ձեւակերպմամբ՝ մեր հաղթանակը ներկայացվեց ընդամենը որպես հաղթած ճակատամարտ:

***– Ի դեպ, մեր օրերում, բոլորիս աչքի առաջ է թարմ օրինակը՝ թշնամու դիվերսիոն գործողությունն անձնազոհաբար կանխած տասնիննամյա պատանին, իր ընկերները հայրենի երկրի սահմաններին տեր լինելու խիզախ օրինակ ցույց տվեցին: Եռաբլուրում արցախյան պատերազմի հերոսների կողքին հանգրվանած կրտսեր սերժանտ Արմեն Հովհաննիսյանի անձնազոհությունը մեր ներքին կյանքում պարբերաբար եւ մշտապես տեղի ունեցող փոփոխաձգությունների ողջ անիմաստությունն ու սնանկությունն ի ցույց դրեց: Մենք հաճախ ենք անդրադառնում այն փաստին, որ պետությունն իր կառույցներով, հասարակությունն ըստ արժանվույն չեն գնահատում մեր իրական հերոսներին: Եվ շարունակում ենք բարձրաձայնել հարցը՝ ո՞վ է մեր օրերի հերոսը...***

- Դառնորեն պիտի ասեմ, որ մենք եւս Լեւոն Տեր-Պետրոսյանի խոսքի հանգույն գիտակցեցինք, չկարողանալով արժեւորել մեր լույսի պես հերոսների, մեր հազարավոր զինվորների մահը: Ժողովուրդը պիտի կարողանար արժեւորել, ըմբռնել իր հաղթանակի գինը: Մենք մեծ հերոսների մասին ենք խոսում, որոնք շատ չեն լինում: Հաղթանակը կերտողները խոնարհ հերոսներն են, որոնցից մեկն էլ Արմեն Հովհաննիսյանն է: Այդ խոնարհ հերոսներով է երկիրը, հայրենիքը պահվում սկսած այն գյուղացուց, որն իր հող-հայրենիքի մի հատվածն է մշակում, արվեստագետից ու գիտնականից, որը չի թողնում-փախչում երկրից: Ասել եմ եւ կրկնում եմ՝ մնացողներն են լավագույնը: Համարում եմ, որ ազգը ցեղախումբ դարձնելու, փտրելու ամենակարճ ճանապարհը ազգին քծնելն է, ինչը շատ վտանգավոր է: Ամենակարեւորը ճշմարտությունն ասելն է: Այսօր մեր հասարակությունը լավը չի: Մեր հասարակությունը շատ մակերեսային է գնահատում, արժանապատվության չափանիշներն իջել են, ամեն մի ստահակ կարող է կանգնել, իրեն առաջնորդի տեղ դրած շարժում ձեւավորել-գլխավորել: Մեր պատմության մեջ ինչն է շատ՝ հերոսները, անունները տալիս են, բայց չեն հասկանում, ինչ է նշանակում Արամ Մանուկյան, Գեւորգ Չաուշ, Մեծն Նժդեհ: Նրանք իսկապես Աստծո տված առաջնորդներ էին, մինչդեռ այսօր հենց այնպես ասում ենք նժդեհականներ եւ այլն, եւ այլն...ես վատ բաներ եմ ասում, բայց հուսահատ չեմ, առողջ է միտքս: Կարծում եմ՝ պիտի մեր լռությունը թարմացնենք, հիշենք ովքեր են մեզ բան ասողները, ովքեր են մեզ առաջնորդում Եվրոպա կամ Ռուսաստան, այս հարցերը շատ կարեւոր են: Ժողովուրդը պիտի մասնակցի, պատահական չի ստեղծվել աստվածաշնչյան պատմություններից մեկը, հիշո՞ւմ եք՝ ինչպես էր Մովսեսը 40 տարի պտտեցնում իր ազգակիցներին անապատով, որ ցեղը դառնա ազգ՝ ազատվի պատեհապաշտներից, թուլակամներից, ստահակներից, որկրամոլներից: Եվ մինչեւ չազատվեց դրանցից, չհասցրեց ավետյաց երկրի սահմանին: Խորիմաստ հեքիաթ է: Ով դիմացավ, դիմացավ՝ մտավ իր երկիր, պահեց իր ազգային ինքնությունը, ով չդիմացավ՝ ավազների մեջ կորսվեց: Ցեղախմբին ազգ դարձրեց: Այսօր մենք հայտնվել ենք նույն վիճակի մեջ:

***– Ի՞նչ գնահատական կտաք ՀՀ նախկին նախագահ Ռ. Քոչարյան-վարչապետ Տ. Սարգսյան փոխհրաձգությանը, որը վերջին շրջանի ամենաինտրիգային բանավեճը կարելի է համարել: Ի դեպ, այն մեկնաբանող տարբեր տրամաչափի գործիչներն այս համատեքստում հաճախ են հիշատակում, ընդ որում՝ նաեւ ուռճացնում Պուտինի գործոնը:***

- Անդրադառնալով այդ հարցին, նաեւ՝ վերեւում ասածս հաստատելու համար ուզում եմ տիպական մի օրինակ բերել. էներգետիկայի նախարարը պատասխանում է Ռոբերտ Քոչարյանին. մի տեսակ հաթաթա տալով նրան, որ ինքնին ծիծաղելի է, ըստ էության, ասում է հետեւյալը եթե կարծում է, Պուտինն իրեն կպաշտպանի, սխալ է հաշվարկել, որովհետեւ Պուտինն արդեն շատ լավ է մեզ հետ: Նախ՝ ինչ է նշանակում «մեզ հետը», ինքը ով է: Ստրուկի նախադասություն է, ես չէի ուզենա, որ իմ կառավարության մեջ այդպիսի անդամ լիներ, որը համարձակվեր նման նախադասություն ասել իմ պետության թեկուզ նախկին ղեկավարին, իմ պետությանը, իմ ժողովրդին: Ցավոք, մեր ժողովրդի մեջ մի տեսակ կա, որ շարունակ հաշվում է երեքնուկի թերթիկներով՝ մեզ սիրում են, չեն սիրում: Չեն ասում՝ իսկ ես սիրո՞ւմ եմ, թե՞ ոչ: Այնքան վիրավորված էի: Այս մարդը բազմաթիվ սխալներ է գործել ԱԺ վերջին նիստերում՝ սկսած գազային անհեթեթ ձեւակերպումներից: Դրանք բոլորն իրեն ներում եմ: Այս մեկը չեմ ներում, որովհետեւ իր համար Լենինի դամբարանն ու Պուտինն են վերին ճշմարտություններն ու Աստծո փոխանորդները: Բա այդպիսին պիտի՝ լինի կառավարության անդամը, այն էլ՝ մեզ համար կենսական ոլորտի ղեկավար... Այսօր ամենահեշտ բանն է ասել պատճառը նախագահի թուլությունն է: Ես էլ ասեմ, ես որ հավատում եմ Սերժ Սարգսյանին, համաձայն չեմ, որ նա կառավարության մեջ պիտի հանդուրժի նման մարդկանց: Գիտեք, դրսից շատ ընկերներ ունեմ, երբ հարցնում են՝ այս կամ այն պաշտոնյան ինչպիսին է, արդեն չեմ համարձակվում ասել՝ սրան հավանում եմ կամ՝ հակառակը, ասում եմ՝ ամեն օր լողանում է: Դա սարսափելի այլախոսություն է: Որպեսզի կարողանամ շատ վատ բան չասել, բայց ուզում եմ լավ բան ասել ու վախենում եմ, թեպետ վախկոտներից չեմ, ուղղակի չգիտեմ՝ վաղը ինչ կլինի, ասում եմ՝ ամեն օր ինքը լողանում է, արդեն քաղաքակրթվել է: Բայց դա դեռ չի նշանակում, որ գռհ ու երջանիկ ենք:

***– Վերադառնանք Ռոբերտ Քոչարյան- Տիգրան Սարգսյան բանավեճին:***

– Անցած 25 տարիների ամենաակտիվ պետական-քաղաքական գործիչներից մեկն է Ռոբերտ Քոչարյանը եւ զարմանալի է՝ հենց այդ մարդը որեւէ բան է ուզում ասել, փոխանակ հետը նորմալ, հանգիստ բանավիճեն, ասեն, պարոն Քոչարյան, այս կամ այն հարցում քեզ հետ համաձայն չենք եւ այլն, այնպես, ինչպես մնացած բոլորի հետ, նրան մի տեսակ որպես աղետ զգում են ասպարեզ, մի մասը ձեռքերը շփելով, ուրախությամբ, մյուս մասն էլ սարսափահար: Ի վերջո, մոռանալով շատ կարեւոր մի հանգամանք, որ Ռոբերտ Քոչարյանն ու Սերժ Սարգսյանը հրով ու սրով անցած ճանապարհ ունեն եւ պետք չի նրանց փոխարեն հարաբերությունների ճշտման մասին ախտորոշումներ անել: Մարդ է, որն ունի իր կարծիքը: Ինչպես ես եմ ասում՝ ամաչում եմ, որ Արմեն Մովսիսյանը մեր կառավարության անդամ է, ինքն էլ ասում է՝ ամաչում եմ, որ Տիգրան Սարգսյանն է մեր վարչապետը: Ընդամենը կարելի է նրա հետ բանավիճել: Ու բացի այդ, Սերժ Սարգսյանը ուժեղ մարդ է, եւ տեղից ելնողի պաշտպանության կարիքը չունի: Երկուսով նախորդ քսան տարիների համատեղ աշխատանքի ընթացքում (պատերազմ, շրջափակում եւ այլն), վստահ եմ, բազմիցս բանավիճել են իրար հետ, բայց, ի վերջո, եկել են համաձայնության: Այլապես մեր ազգային ամենամեծ ձեռքբերումը՝ արցախյան հաղթանակը չէինք ունենա: Մտնել ոչ տեղին դրված ստորակետի պես այդ պատմությունների մեջ, ճիշտ չի, ավելորդ լարում է մթնոլորտը, բանավեճը լուրջ առճակատում դարձնում, որի ոչ կարիքը ունենք, ոչ էլ դրա ժամանակն է: Չեմ կարծում, թե Ռոբերտ Քոչարյանը մտադիր է որեւէ պաշտոն զբաղեցնել, սակայն համոզված եմ, որ նա միշտ էլ մնալու է քաղաքականության մեջ՝ իր սեփական ուրույն ասելիքով, անկախ նրանից, թե դա ում է հաճելի կամ տհաճ: Նա հեռացավ որպես քաղաքական ասպետ: Ես ուզում եմ, որ այդ կերպարից ինքը դուրս չգա: Նույնն էլ Սերժ Սարգսյանը: Իրենք ամեն ինչի՝ արյան, վառոդի, ընկերության գինը լավ գիտեն:

***– Դուք հավատում եք Սերժ Սարգսյանին, մինչդեռ կառավարության ղեկավարին, այս կամ այն անդամին անվստահություն եք հայտնում: Բայց չէ՞ որ նրանք բոլորը նախագահի թիմակիցներն, նրա ընտրած կադրերն են:***

– Հավատում եմ նախագահին, որովհետեւ վստահ եմ, որ ինքն ուժեղ է, պետության ղեկավարին հավատալը դա է, եւ ես չեմ մտածում՝ նախկին նախագահը հենց խոսում է, աղետ է, Սերժ Սարգսյանին ոչնչացնելու նպատակ: Ի դեպ, եթե Ռոբերտ Քոչարյանը կարծիք է հայտնում, բանավիճում, ապա Լեւոն Տեր-Պետրոսյանը հստակ ելավ կանգնեց, քանի հարյուր հազար մարդ էր կանգնած նրա կողքին եւ հետեւում: Սա ինչ բան է, ինչ մոտեցում է:

***– Լավագույն տղերքը հեռանում են... միայն տարեսկզբին վառ, ազնվական մտավորականների անդառնալի կորուստներ ունեցանք՝ Լեւոն Խեչոյան, Արմեն Մազմանյան, Արամ Դարաբեկյան... այս առումով անցյալ տարին էլ ծանր կորուստներով եղավ, մինչդեռ նրանք բոլորն էլ՝ Հովհաննես Գրիգորյան, Վրեժ Իսրայելյան, Հրաչ Բեյլերյան, Վաչե Եփրեմյան, Վահան Վարդանյան, այնքան ասելիք ու ծրագրեր ունեին... Ինչո՞ւ են մահանում, ինչո՞ւ է հեռանում ազնիվ տեսակը:***

– Հրապարակային եւ ոչ հրապարակային շատ կորուստներ ունեցանք, ինձ համար թանկագին Լեւոն՝ Խեչոյանին հասցրեցի հեռախոսով ասել՝ մաքառի, Լեւոն ջան, բայց... սիրտս մղկտում է, Արմենի մասին էլ

Ծ6

5➲

չեմ ասում, թաղման թափորն անցնում էր ու ես մտածում էի ուր էիք, երբ նրան բզկտում էին, ուր էիք, մարդ չկար, որ պաշտպաներ, հիմա հանկարծ արժեւորեցին, որ նա նորարար էր, բարձր ինտելեկտի տեր մարդ եւ օդը տատանում էր, ստիպում էր մտածել, բանավիճել: Արամ Ղարաբեկյանին, թանկագին ընկերոջս, վերջին անգամ նոյեմբերին տեսա, այցելեց ինձ՝ հուշիկ ազնվական իր ներկայությամբ, որը միշտ թանկ է ինձ համար եւ ուրախ եմ, որ մշակույթի նախարարությունը շատ լրջորեն զբաղված է հուղարկավորության հարցերով: Այս ահավոր տխուր իրողությունների պատկերում ինձ ցնցել է մի փաստ. առաջին բանը, որը վախեցած հրապարակ նետվեց, այն էր, որ կառավարությունը բուժման ծախսերի համար 8 միլիոն դրամ է հատկացրել Լեւոն Խեչոյանին եւ 4 միլիոն դրամ Արմեն Մազմանյանին: Բարեսիրությունը խոնարհություն է, չի կարելի այսպես հրապարակավ եւ աննրբանկատ տարփողել դրա մասին: Այնքան ամաչեցի ես, այնքան գավառական քայլ էր սա: Այսօր մեր էլիտան մշակույթի եւ գիտության ներկայացուցիչները չեն, այլ իշխանավորները... Այդ դեպքում ուզում եմ հարցնել, բա որ Լեւոն Խեչոյանը շատ ծանր էր ապրում, ինչո՞ւ չէիք մտածում. այդ 8 միլիոնի կեսը հատկացնեիք, ասեիք՝ գնա մի տարի նստի, տաղանդավոր վեպերիցդ մեկը գրի: Այսօրվա օրը եթե հանապազօր հաց վաստակելու խնդիրների մտահոգությամբ չապրեր՝ կարող է Լեւոն Խեչոյանը կենդանի լիներ: Մենք դեռ ինչքան պիտի ճանապարհ անցնենք, որ հասկանանք՝ բարեսիրությունը բարձրաձայն չպիտի անես: Թե չէ՝ տանում մի զիզի-բիզի խաղալիք են տալիս երեխային ու հայտարարում ի լուր աշխարհի: Սա շատ լավ եմ ըմբռնել, քանի որ 17 տարի բարեսիրական կազմակերպություն եմ ղեկավարել: Բարեսիրությունը խոնարհություն է՝ անվերջ գրել ու ասել եմ, հասկացել եմ նաեւ, որ «բարի գործի» մասին բարձրաձայնելիս, իրենց հոգու փրկության մասին են մտածում, ոչ թե փրկվողի: Այս համատեքստում հիշում եմ Սովետական Հայաստանի փոխվարչապետ Ալեքսան Կիրակոսյանին, ով մշակույթի գործիչների մի ողջ փաղանգ էր պահում: Ամեն ինչ փորձում էր անել այդ մարդկանց համար՝ սկսած բնակարանից ու ավտոմեքենայից, նրանց տաղանդին հարիր կենցաղային հարցեր էր լուծում: Տալիս էին, բայց չէին գոռում: Հիմա դուք պետության պահուստային ֆոնդից գումար եք հատկացնում եւ աշխարհով մեկ հայտարարում եք... Այնքան իշխանություններ կգան ու կգնան, Լեւոն Խեչոյանի գիրն է մնալու հիշատակող: Ես ապահովագրում եմ նաեւ ինձ, որ վաղը հանկարծ բարձր չասեն՝ Ալվարդ Պետրոսյանին փորձեցինք բուժման համար փող տալ: Չեմ ուզում:

***– Նախագահի մրցանակի շնորհման գործընթացի խութ ու խոռոչներին նախկինում եւս անդրադարձել ենք: Այս տարի պարզվում է՝ «Արվեստ» անվանակարգում մրցանակի շնորհման հանձնախմբի 8 անդամներից 5-ը դատի են տվել Լեւոն Մութաֆյանին, քանի որ վերջինս հայտարարել է, թե փորձագիտական հանձնաժողովը թայֆայական մտածողությամբ է առաջնորդվում: Դատի են տվել եւ նրանից պահանջում են 3 միլիոն դրամ: Կարծեմ, որոշել էիք՝ ձեր վերջին՝ «Ապրելու 0 ժամ» գիրքը ներկայացնել, հետո ինչո՞ւ փոշմանեցիք...***

– Մարդն իր կարծիքն է հայտնել, ես էլ իմ կարծիքն եմ հայտնում, որ այո, անաչառ չի այդ հանձնախմբերի աշխատանքը, եւ ես երբեք չեմ մոռանա, թե ինչպես Արմեն Մարտիրոսյանի, մեր սքանչելի արձակագիր-բանաստեղծի փայլուն վեպը՝ «Մազե կամուրջը» չարժանացավ մրցանակի: Ի սկզբանե որոշված էր, որ ուրիշին էին տալու, թեպետ Արմեն Մարտիրոսյանը բացարձակ հաղթած էր: Պարզվեց, միայն ես ու Ազատ Եղիազարյանն էինք «հարիֆ»-ը: Նախ՝ ինչ է նշանակում գաղտնի քվեարկություն: Եթե ես մեկին արժանի եմ համարում, ինչո՞ւ պիտի թաքուն քվեարկեմ: Ի դեպ, տարիներ առաջ ուզում էի գիրքս ներկայացնել մրցանակի, բայց մտածում էի՝ կասեն ԱԺ պատգամավոր է, իսկ ես չեմ ուզում գրականությանը կեղտ դիպչի: Չներկայացրեցի, հիմա էլ, փառք Աստծո, պատգամավոր չեմ, կարելի էր ներկայացնել, բայց երբ հասկացա՝ ովքեր են որոշելու՝ իմ գիրքը իշխան ձուկ է, թե «սելյոդկա», փոշմանեցի: Ես վատ չեմ վերաբերվում Էդվարդ Միլիտոնյանին, Աստված իր հետ, բայց մտածում էի՝ ԳՄ նախագահը, բանաստեղծը, այնքան զգայուն պիտի լիներ, որ իր գիրքը պետական մրցանակի չներկայացներ, ոչ թե պատճառաբանություն բերեր, թե ինքը Լեւոն Անանյանի ժամանակ է ներկայացրել: Այն ժամանակ էլ նախագահ չէր, բայց քարտուղար էր:

***– Վերջերս Աղասի Այվազյանի հարցազրույցները կարդալուց հետո մի տեսակ մտովի վեճի էիք բռնված նրա հետ: Հարթվե՞ց, ընդհանուր հայտարարի եկա՞ք:***

- Իհարկե, չէր կարող չհարթվել, պարզապես իրար հաջորդող հարցազրույցներ էին՝ մեր գեների, հայ տեսակին հատուկ հիվանդության մասին, մի դեպքում՝ դժգոհում էր մեր տեսակից, մյուսում՝ հիացած էր: Մի խոսքով՝ մեր հակասական հայ տեսակին, նաեւ ինձ, շատ բնորոշ... Ի դեպ, պարբերաբար կարդում եմ՝ Աղասի Այվազյանի հետ զրույցներդ. գրքիդ շնորհանդեսին գրել էի, ուզում եմ նաեւ ասել՝ հրաշալի գիրք է, շատ ուսուցանող, բայց պիտի կարդան: Ինքս արդեն մի քանի անգամ եմ հասցրել կարդալ... մի տեսակ, փաստորեն միասին ստեղծագործել եք... Աղասին շատ հետաքրքիր էր, երեխայի պես՝ միամիտ, մեջը եւ ազարտ, եւ հիացմունք, եւ ամբողջ կենսափորձով, տաղանդով, առ Թամանյան իր անհավատալի սիրով եւ լավատեսությամբ, այնուամենայնիվ մանուկ կար նստած: Ես դեռ չեմ տեսել մեկին, որը մանրամասն բացատրելով իր սերն առ Թամանյան խոսի, ներկայացնի նրան: Այսքան ճարտարապետներ կան, ինչից խոսեն, Թամանյանին են հղումներ կատարում, բայց նա այնքան մանրամասն է պատճառաբանում իր սերը, հիացմուքը, անանձնական հավատարմությունը երկրին, չմանրանալով, փոքրիկ ակնարկով, որ թոշակ է ստանում ինքը, շքեղ չի ապրում, բայց մի օր «օֆ» չի արել, չի բողոքել: Ինքը այս երկրից պահանջատեր չի, ինքը պարտք է միշտ երկրին: Այս տեսակը, ափսոս, այսօր քիչ է:

***– Գուցե նրանից է, որ երկրում չարությո՞ւնն է շատ: Ի դեպ, բանաստեղծությամբ, որը Ֆեյսբուքում էլ տեղադրել էիք, նշանակետին եք խփում.***

**Չարությունը՝ գայլիկոն,**
**Շաղափում է սիրտը մեր,**
**Ու գամված ենք այս հողին,**
**Արնաքամ, թե՝ արնակեր:**

***Անահիտ ԵՍԱՅԱՆ,***
***«Առավոտ» օրաթերթ***

# Թույլ չտա՛նք հայոց պատմության ցավալի դրվագների կրկնությունը

Կարծում եմ մեր ժողովրդի համար շատ հետաքրքիր և ուսանելի կլինեն անդրադարձները մեր իսկ պատմությանը, որովհետև, ցավոք, մենք այն շատ հաճախ մոռանում ենք, հատկապես մեր պատմության վճռորոշ, ճակատագրական դրվագները: Հետևաբար չենք քաղում դասեր ապագայում նույն սխալները չկրկնելու համար: Իսկ պատմությունը, ինչպես հայտնի է, զարմանալիորեն կրկնվում է:

Ահա մի դրվագ XIX դարի վերջի հայ ժողովրդի ազգային ազատագրական զարթոնքի պատմական շրջանից: Նկատենք, որ դեռ տեղի չէին ունեցել զանգվածային ջարդերը և, հավանաբար, ներկայացված իրավիճակն ու համանման դեպքերն են նաև նպաստել կոտորածների իրագործմանը:

Հայ պատմագիտական նյութերից: Դրվագ թիվ 1:

Հեղափոխական ներքին ուժերը կարող էին հզոր լինել, հզոր նյութական միջոցների առկայության



դեպքում միայն: Բայց հայ հարուստները զլանում էին փող նվիրաբերել սրբազան գործի հաջողությունն ապահովելու համար, մոռանալով, որ «սխալ խնայողութիւն կատարելով կը փասեն ինքզինք, քանզի սխալ խնայուած կարծուած դրամը կորսուած դրամ կը դառնայ»: Դա նման էր այն իրավիճակին, երբ մարդը, խնայելով դրամ ծախսել ուտելիքի և բնակարանի ջերմությունն ապահովելու համար, հետագայում ստիպված կրկնակի ու եռակի է ծախսում բժիշկների ու բուժման համար: Հայ հարուստներն ու, ընդհանրապես ունևորները, հաճախ զլանում էին փոքրիկ նվիրատվություններ կատարել ազատարար գործի համար, իսկ արդյունքում թուրքը խլում էր նրանցից վերջին կոպեկն ու նաև կյանքը. «Վերջին տարիների կոտորածների միջոցին Քիւրտերն ու Թիւրքերը Հայերէն կողոպտելու համար բաւական գումարներ գտան, որոնց քանակը մի քանի միլիոնների կը հասնի և որոնց 1/10-ը չէր հաճեր Հայ ազգը ինքնաբերաբար զոհել իր ազատութեան գործին համար»:

1897 թ.

**Հայ մեծահարուստներ,**
**գիտակցե՛ք սա և գործի՛ անցեք:**

# ԶՐՈՒՅՑ ՁԵՆՈՎ ԹՈՐՈՍԻ ՀԵՏ




Համշենահայ անվանի բանաստեղծ Սիրավան Սևունին ընթերցողի արդարադատությանն է հանձնել իր «Ձենով Թորոսը» լիրոէպիկական նոր պոեմը, որտեղ հանձինս Թորոսի լուսաբանում է օտար երկնքի տակ հայոց հորովել երգող գյուղացու հարափոփոխ կյանքի ելևէջները, նրա հոգսերն ու մտորումները, նկրտումներն ու աշխատանքային բուռն առօրեականը:

Պոեմի սյուժեն հետևյալն է.

Աբխազիայի լեռնային Լաթա գյուղում ապրում է Թորոս անունով մի հաղթանդամ մարդ, ում ձայնը այնքան հզոր է ու բարձր, որ մի գյուղից մյուսն է հասնում: Համագյուղացիները նրան անվանում են Ձենով Թորոս:

Բանաստեղծը Թորոսի գերմարդկային հատկանիշը բնութագրում է էպոսին հատուկ հիպերբոլիկ պատկերներով.

Երբ խոսում է Թորոսը մեր,
Խլանում է որոտն ամպի,
Զարմանում են մանուկ ու ծեր,
Լույսն է հանգչում իրենց լամպի:

Թորոսը խորապես կապված է հարազատ գյուղին ու նրա մարդկանց, սակայն կյանքի դառնությունները ստիպում են նրան փախչել հարազատ վայրերից և հասնել ռուսական երկիր: Այստեղ նոր տուն ու տեղ է հիմնում և շարունակում իր երկրագործությունը՝ ծխախոտ է մշակում ու թեյ հավաքում: Եվ կարճ ժամանակամիջոցում նրա աշխատանքային սխրանքների արձագանքը տարածվում է՝

Փառքը հասավ մինչև Մոսկով,
Ամբողջ երկրին դարձավ ճանաչ:

ապա

Պետությունը ռանչպար մարդուն
«Զապորոժեց» նվեր տվեց:

Բայց աշխատասիրությունը Թորոսի միակ մենաշնորհը չէ, նա բացառիկ ընթերցասեր անձնավորություն է նաև:

Բանաստեղծի մտահղացած պատմական բնույթի էքսկուրսներից պարզվում է, որ նա հայ պատմագրության երկրպագու է. հաճախ երևակայությամբ տեղափոխվում է պատմական անցյալ ու զրույցի նստում հայ նշանավոր գործիչների ու հերոսների հետ:

Թորոսի մտային ուղևորությունը պատկերված է այս կերպ.

Հին դարերի քարուփոշով,
Ջնդյաններով մամռակալած,
Գնա՛ց-գնաց սար ու ձորով,
Պատմահորը տեսավ հանկարծ...

Կամ՝

Ապա մեկ էլ գնաց Սասուն
Եվ հանդիպեց թլոր Դավթին...
- - - - - - - - - - - - - - - - - - -
Դավիթն ասաց. - Թորոս, հանգիստ,
Իմ հայախոս երկրում երբեք
Չեմ ներելու ստահակին...

Պոեմը, որը իր տեսակի մեջ եզակի է, գրված է մի շնչով, անմիջական և հագեցված է այնպիսի ուսանելի դրույթներով, ինչպիսիք են հայրենասիրությունն ու աշխատասիրությունը, հավատարմությունը և այլն: Հատկապես արտակարգ հուզիչ է հայ-ռուսական բարեկամության դրվագը, երբ դրացի Իվանը գալիս է Թորոսի հետ ծանոթանալու.

Ապա եկավ Իվանն ուրախ,
Մի շիշ օղի ջեբից հանեց,
- Լինենք ծանոթ, ապրենք խաղաղ, -
Ու բաժակի օղին խմեց:
Մտերմացան հետն Իվանի,
Հետաքրքիր մարդ էր բարի,
Եվ միասին թևը-թևի
Աշխատեցին տասնյակ տարի:

Պոեմի բոլոր նշանակալի գլուխները նկարազարդված են, լրացնում են բովանդակությունը և արժանանում ընթերցողի ուշադրությանը, անջնջելի տպավորություն թողնում նրա վրա:

Պոեմում զգացմունքային տեսարանների կողքին տեղ է գտել մի զավեշտային դրվագ, որը հազիվ թե նմանն ունենա... Թորոսը նստած նվեր ստացած ավտոմեքենայի հետնամասին ոտքերը գետնի վրա, սղոցում է մեքենան երկարությամբ, որ երկու կես անի, որպեսզի ստացվի երկու մոտոցիկլ...

Կարդում ենք

Խզարն առավ, ասաց կտրեմ,
Մոտոցիկլ դարձնեմ երկու,
«Զապորոժեց» ես ո՞նց նստեմ
Խոշոր ջանով իմ ահարկու:

Վերը մենք խոսեցինք պոեմի արժանիքների մասին, մինչդեռ հեղինակի համար ավելի օգտակար է իմանալ, թե ինչ թերություններ են թաքնված պոեմի էջերում:

Մեր համեստ կարծիքով պոեմի հիմնական թերությունը բանաստեղծի քաղաքական բնույթի միջամտություններն են, որոնք պարզապես թուլացնում են երկի օրգանական կապը: Ընդ որում՝ բոլորն էլ հասցեագրված են պետության նախկին ղեկավարներին:

Ինչևէ, «Ձենով Թորոսը» պոեմը ընթերցվում է մի շնչով: Ցանկանում եմ բանաստեղծ Սիրավան Սևունուն ստեղծագործական նորանոր հաջողություններ:

***Անդրանիկ ԲԱՀԱՐՅԱՆ,***
***ԽՍՀՄ գրողների Միության անդամ***

***Սիրավան ՍԵՎՈՒՆԻ***

## Ի՛Մ ՀԱՅԱՍՏԱՆ

Մի՛ սխալվիր, Հայաստան,
Ռուսաստանն է բարեկամ,
Քեզ թիկունք է անսասան
Թշնամուդ դեմ մշտական:

Թող Եվրոպան իր համար
Գանձերի մեջ ուռճանա,
Բարիքները անհամար
Թեկուզ հեռվից քեզ ջանա:

Կյանքի փորձը քանի՛ դար
Դարձել է քեզ կուռ վկա,
Կապույտ երկինք, զառ կամար
Ռուսաստանը քեզ կտա:

Եվրոպական բիրտ բարքեր
Մի՛ թող խուժեն քո սուրբ տուն,
Ամուսնություն միասեռ
Խորթ է հավերժ քո հոգուն:

Ստեպների լիառատ
Բույրով լցվի քո հոգին,
Ռուսաստանն է հարազատ
Պատնեշի պես քո մեջքին:

Ռուսաստանը քո կողքին,
Երբ կանգնած է միշտ հզոր,
Կծածանես քո ձեռքին
Ալ դրոշը մեր բոսոր:

***15 դեկտեմբերի, 2013 թ.***
***Լազարևսկ***

***Նարեկ ՍԱՀԱԿՅԱՆ***

**Հորս կողմը 1915 թ. Վասպուրական գավառի, Շատախ գավառակից են գաղթել: Միշտ հայրենիքի կորստի զգացում եմ ունեցել, բայց նաև վստահ եմ և կլինեմ, որ կորցրածը՝ վերադարձնելու ենք:**

**Սիրով, Ձեր հավանությանն եմ ներկայացնում:**

### Հայից խլել են երկիրն հայրենի...

Հայից խլել են
Երկիրն հայրենի,
Հանճարը ազգի,
Պատգամը մեծի,
Տաճարները սուրբ,
Որին նայելով,
Սերնդե սերունդ,
Ուժ է փոխանցվել՝
Փորձը մեծերի:
Փորձել են մորթել,
Ջրկել անցյալից,
Մի ողջ ժողովուրդ,
Սակայն ապարդյուն,
Հայը իր սրտում,
Փափագն է կրում,
Հույսով ա՛նկոտրում,
Որ վերջի՛ վերջո,
Հայրենի հողին,
Տեր է կանգնելու:

# «Շատերը դուռս են ջարդում, որ դառնան իմ ասպիրանտը, սա հրաժարվում է»



Արժեքասպան օրերում շատ բան աննկատ է մնում մեր աչքից: Այնինչ, ազգային գիտության և մշակույթի նվիրյալները, մի կողմ թողած սոցիալական դժվարությունները, հնագույն մեր ծաղկողների ջանասիրությամբ շարունակում են կերտել մեր ներկա և վաղվա օրը: Այդ եզակիներից է բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, 85-ամյակը բոլորած պատկառելի գիտնական այր **ՆԵՐՍԵՍ ՄԿՐՏՉՅԱՆԸ:**

***– Պարոն Մկրտչյան, բազմաբովանդակ է Ձեր գիտական աշխարհը, այսօր կարծես թե բավարարվածության զգացողություն պիտի ունենայիք, բայց անհանգիստ եք:***

- Հայերենի հնդեվրոպական լեզու լինելու հանգամանքը չարաշահվում է համեմատական լեզվաբանության ներկայացուցիչների կողմից, ինչպե՞ս չանհանգստանամ: Հայերեն յուրաքանչյուր բառ բխեցնում են անպատճառ հնդեվրոպական արմատներից: Այս մոտեցումը ժամանակին մերժել են Նիկողայոս Ադոնցը, Նիկողայոս Մառը, Գրիգոր Ղափանցյանի նման խորագետ մասնագետները, նաև Ձեր խոնարհ ծառան: Իմ բազում հոդվածներն այժմ ամփոփված են շուրջ երկու հազար էջ կազմող գրքում, որը դեռ պիտի հրատարակվի: Այն վերնագրված է բավականին խոսուն «Հայերենի ոչ հնդեվրոպական բառապաշարը»:

***– Այսինքն, կա հնդեվրոպական և ո՞չ հնդեվրոպական բառապաշար:***

- Այո, ինչպես բոլոր լեզուները, հայերենն էլ ունի հարևան բազմաթիվ լեզուներից վերցված բառեր՝ խեթերենից, հայասերենից, աքքադերենից, խուռերենից, ուրարտերենից, հունարենից, թուրքերենից, արաբերենից, այսինքն, սեմական լեզուներից:

***– Որո՞նք են սեմական լեզուները:***

– Ասորերենը, արաբերենը, աքքադերենը, բաբելերենը և ասուրերենը: Ժամանակի ընթացքում մենք բառեր ենք վերցրել ֆրանսերենից, անգլերենից և այլն: Ժամանակային իմաստով դա մի փիթխարի շրջան է՝ երեք հազար տարուց ավելի:

***– Սա բնակա՞ն ընթացք է:***

– Այո, ոչ մի լեզու առանց փոխառության չի կարող գոյատևել: Ժամանակին Ռուսաստան մուտք գործեցին՝ հսկայական քանակությամբ տեխնիկական բառեր Հոլանդիայից՝ Պետրոս Մեծի ժամանակ:

***– Ձեր հրատարակվելիք աշխատության բուն խնդիրը ներկայացրեք:***

– Բուն նպատակն է՝ ճշտել փոխառությունների իսկական աղբյուրները: Բայց ահա վերջերս լույս ընծայվեց հիմարությունների մի հավաքածու. բացի այն, որ ամեն բան հեղինակը բխեցնում է հնդեվրոպական լեզվախմբից, նաև արաբերեն, պարսկերեն և թուրքերեն բառերը հայերեն է համարում: Հեղինակը Վազգեն Համբարձումյանն է, գիրքը վերնագրված է «Հայերենի բառաքննական և ստուգաբանական ուսումնասիրություններ»: Ի դեպ, նա ԳԱԱ թղթակից անդամ է: Եվ ահա ստուգաբանում է և ուսումնասիրում, հայերեն է համարում հետևյալը. «Հալս հալ չի», սակայն չէ՞ որ «հալը» արաբերեն բառ է: Հայերեն է համարում նաև էշխ-ը, որը թուրքերեն «սեր» է նշանակում, «բուղան», ըստ նրա, դարձյալ հայերեն է:

***– Որքան տեղյակ եմ, բուղան թուրքերեն է և նշանակում է ցուլ:***

– Տեղյակությունդ ճշմարիտ է, բուղան ցուլն է, ըստ հեղինակի՝ բուղը հայերեն է և դարձել է բուղա: Ինչևէ, հեղինակին, ով գիրքն ինձ էր ներկայացրել գրախոսության, ուղղակի ասացի, որ գիրքն իզուր է գրել:

***– Հրատարակիչն ո՞վ է:***

– ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատարակչությունը:

***– Պարոն Մկրտչյան, փոխառնված շատ բառերի ստուգաբանության շուրջ հաճախ են վիճաբանում, մասնավորապես, տարակարծությունների պատճառ է, ժողովրդական ուտեստի՝ քյաբաբի ծագումնաբանությունը:***

-Արաբերեն բառ է, «քաբաբա» նշանակում է այրված, եփված կրակի վրա: «Լահմաջոն» ևս արաբերեն է, «լամ»-ը նշանակում է խմոր, «մաջո»-ն էլ՝ միս, այսինքն՝ մսախմոր:

***– Այսինքն, Վազգեն Համբարձումյանի ամբողջ գիրքը նույն տրամաբանությա՞մբ է գրված:***

– Ցավոք, այո:

***– Բայց նման պատասխանատու աշխատությունները սովորաբար գիտխորհրդով են անցնում, ինչպե՞ս է այն սպրդել:***

– Ոչ էլ կարդում են, խորամուխ լինում: Ո՞վ պետք է այդքան ժամանակ վատնի, վատնելու դեպքում էլ մի՞թե կհասկանան: Հայ լեզվաբանը պիտի տիրապետի լեզուների, գումարած ընդհանուր լեզվաբանության օրենքները, հարևան երկրների որ հնչյունը ինչ է դառնում և այլն:

***– Կարծում եմ՝ կհամաձայնեք ինձ հետ, որ այս պարագայում անհատի խնդիրը չէ, այլ գիտական կազմակերպությունների, ՀՀ ԳԱԱ լեզվի ինստիտուտի խնդիրը: Սակայն հետադարձ հայացքով թերևս ծանոթանանք Ձեր անցած ուղուն, զուգահեռաբար ծանոթանանք հայ լեզվաբանության շուրջ տիրող մթնոլորտին:***

– Երբ սովորում էի մանկավարժական ինստիտուտում, մեզ բարբառագիտություն էր դասավանդում նշանավոր Արարատ Ղարիբյանը: Մի օր ասպարեց հաջորդ օրը մեր պապերի և տատերի՝ խոսքով գրված նյութեր ներկայացնենք, հեքիաթներ, անեկդոտներ՝ իրենց բարբառով: Մայրս, Վերոնիկա Բերբերյանը, Կեսարիայի մոտ գտնվող գյուղից էր, անվանի ընտանիքից: Նա քաջ գիտեր և՛ հայերեն գրաբարը, և՛ թուրքերենը, և՛ ազգագրական բազում սովորություններ ու զրույցներ էր հիշում, առհասարակ փայլուն հիշողության տեր էր: Ու քանի որ մորս պապը եղել է քաղաքի Մեջլիսի անդամ, նրանց տանն են հյուրընկալվել բազմաթիվ թուրք և օտարազգի հյուրեր, սեղանը սպասարկում էր մայրս, տակավին ինը-տասը տարեկան մի աղջնակ, և նա բառացիորեն կլանում էր ականջի լսածը: Հաջորդ օրը բազում նյութեր դրվեցին Ղարիբյանի սեղանին՝ Վանի, Արցախի և այլ բարբառներով: Մեկ օր անց նա լսարան մտավ և բացականչեց. «Այ տղա, դու գիտե՞ս, որ գյուտ ես արել: Աճառյանն իր բարբառագիտության գրքում ասում է, որ Եփրատից այն կողմ հայերեն չի հնչել, բոլորը թրքախոս են դարձել, դու հայերեն տեքստ ես բերել»: Հետո ասաց, որ իրեն տանեմ մորս և Կեսարիայից ներգաղթածների մոտ: Ես «Մոսկվիչ» մեքենա ունեի, հարգարժան դասախոսիս ուղեկցեցի Արմավիրի գյուղերը, Նոր Արեշ թաղամաս և այլուր: Եվ, խնդրեմ, Արարատ Ղարիբյանը իմ հոդվածը տեղադրում է բարբառագիտության մասին իր աշխատությունում հետևյալ ձևով. «Ասաց Վերոնիկա Բերբերյանը, գրի առավ չորրորդ կուրսի ուսանող Ներսես Մկրտչյանը»: Դա էր իմ առաջին հայտը հայ բարբառագիտության մեջ:

***– Մյուս հայտերն էլ, համոզված եմ, ոչ պակաս ուշագրավ են:***

– Մի օր քաղաքում լուր սփռվեց, թե ուրարտական մի սայլ են թանգարանում ցուցադրում, Լճաշենի սայլն էր: Դիտեցինք ու երբ դուրս

եկանք, հրապարակի շատրվանների մոտ Արարատ Ղարիբյանին հանդիպեցինք, ով զրուցում էր մի քանի պատկառազդու ակադեմիկոսների հետ: Բարևեցի և հեռացա, մեկ էլ ձայն է տալիս, թե մոտեցիր: Պարզվեց՝ վաղուց է ինձ փնտրում: Ասաց, որ ցանկանում է ինձ իր ասպիրանտը դարձնել, քանի որ լավ գիտեի արևմտահայ, մասնավորապես, Բութանիայի բարբառները: Ամոթխած հրաժարվեցի, ուսուցչությամբ էի զբաղվում Նոր Արեշի դպրոցներից մեկում և շատ էի իմ աշխատանքից գոհ: Մեկ էլ բղավեց՝ այս տղան հիմար է, շատերը դուռս են ջարդում, որ դառնան իմ ասպիրանտը, սա հրաժարվում է: Մի խոսքով, Լճաշենի սայլը բախտորոշ էր ինձ համար: Առաջին հանձնարարված թեման համընդգրկուն էր. «Արևմտյան Անթալիայի չուսումնասիրված բարբառը»: Հետո թեկնածուական և դոկտորական թեզերի պաշտպանություն և բազում ուսումնասիրություններ, իրադարձություններ, դեպքեր և դեմքեր՝ գիտության իմ ոչ այնքան հարթ ճանապարհին:

***– Շրջայց կատարենք:***

– Լենինգրադից երկու երիտասարդ վերադարձան, մեկն իմ աշխատասենյակում անցավ գործի, խեթագետ Վալերի Խաչատրյանը: Երբ նա սեպագրերը փռում էր սեղանին, ուղղակի խելքս գնում էր, ո՜նց եմ այս հրաշքներից անմասն մնացել: Սկսեցի խորանալ սեպագրագիտության մեջ, օրեր և ամիսներ շարունակ:

***– Ձեր հետնորդները պահպանո՞ւմ են կապը գիտաշխարհի հետ:***

– Հարցիդ մի պատմությամբ պատասխանեմ: Ուրարտերենի գծով կոնֆերանս էր Հայաստանում: Ժամանել էին շատ նշանավոր աքքադագետներ և սեպագրագետներ ողջ աշխարհից: Առաջարկեցի բանկետը կազմակերպել Գառնիում, ցույց տալու հյուրերին տաճարին կից բաղնիքի մակագրությունը «Աշխատեցինք ոչինչ չստանալով»: Ակադեմիայից ուղևորվեցինք Գառնի: Աղջիկս Հասմիկը, մեզ հետ էր, թևի տակ աքքադերենի այբբենարանը: Ասեմ, որ շատ գիտնականներ իրենց կանանց հետ էին ժամանել: Եվ ահա իտալացի ուրարտագետի կինը, Հասմիկին տեսնելով, բացականչեց. «Բելա բամբինո, բելա բամբինո, եկ այստեղ»: Զարմացավ, գիրքը տեսնելով դստերս մոտ, և առաջարկեց կարդալ: Հասմիկս կարդաց և բավականին վարժ: Ամուսինը՝ Սալվինին, զրուցում էր հանրաճանաչ գիտնական Դյակոնովի հետ: Ձայն տվեց, ամուսինը մոտեցավ, լսեց աղջկա ընթերցանությունը և բացականչեց. «Օ՜, մադոննա միա»: Հետո ասաց, որ երբ հասնեն Իտալիա և պատմեն, թե տասը տարեկան երեխան աքքադերեն է կարդում, չեն հավատա: Հետո Սալվինին իր հարցազրույցներից մեկում ասել էր՝ զարմանալի երկիր է Հայաստանը, երեխաներն էլ են սեպագիր կարդում: Այս պատմությունն աշխարհով մեկ տարածվեց, անգամ Չուկոտկայից էին երեխաները նամակ գրում և խնդրում, որ Հասմիկը սեպագրերով իրենց անունը գրի և ուղարկի:

***– Շատ հետաքրքիր է, բայց լեզվական առնչություններին վերադառնանք:***

– Սիրով: Տպագրեցի մի հոդված խեթահայկական ընդհանրությունների շուրջ: Մինչ այդ հայտնի չէր, որ «բրուտը» խեթերեն է և նշանակում է կավ: Նման շատ բառեր կան: Իտալական «Օրիենտալիա» («Արևելագիտություն») ամսագիրը տպագրում է սեպագրի մասին որևէ երկրում հրապարակված նյութեր: Ինձ էլ անդրադարձան: Եվ այսպես դարձա խեթագետ: Հետո անցա աքքադերենին, որը շումերենի շարունակությունն է: Ցավոք, մեր որոշ գիտնականներ երբեմն խորամուխ չեն լինում կնճռոտ հարցերում: Այսպես, նշանավոր գիտնական Ջահուկյանը մի աշխատություն ունի «Հայերենի օրինաչափություններից շեղվող բառեր». ես հիմնավորեցի, որ ոչ թե շեղված բառեր են, այլ աքքադերեն են՝ չորս հարյուր բառ: Ժամանակին հռչակավոր հայագետ Հյուբշմանն է վրիպել. արաբերեն բառերը Հայաստան են եկել 640-ին, արաբների առաջին ներխուժման հետ: Ես հիմնավորեցի, որ դեռ դասական գրաբարում, ավելին, «Աստվածաշնչում» մինչ այդ կային բազմաթիվ արաբերեն բառեր, որոնք անցել էին հայերենին: Հոդված գրեցի. «Հյուբշմանի սխալները», տպագրվեց ԳԱԱ «Պատմաբանասիրական հանդեսում»: Այնուհետև հոդված գրեցի Հրաչյա Աճառյանի «Արմատական բառարանում» եղած սխալների մասին: «Պատմաբանասիրական հանդեսի» խմբագիրը, ինձ տեսնելով, բացականչեց. «Արա՛, հերիք է գիգանտների հետ քյալլա տաս»: Հետո նյութն ուղարկել էր Լենինգրադ և այլ գիտական կենտրոններ, հավանություն էին տվել և մի օր, ակադեմիայում հանդիպելով, ասաց. «Ա՛յ գիգանտների հետ քյալլա տվող, հոդվածդ տպելու եմ»: Եվ տպագրեց:

***– Մեծարգո պարոն Մկրտչյան, հուսամ՝ էլի կհանդիպենք, քանզի Դուք դեռ շատ ասելիք ունեք: Այժմ սպասենք մեկենասների արձագանքներին, ովքեր կկամենան Ձեր աշխատությունը հրապարակել:***

– Շնորհակալություն Ձեզ և «Իրատես de facto»-ին:

***Զրույցը՝ Վրեժ ԱՌԱՔԵԼՅԱՆԻ***

# Տեղաբնի՞կ է, արդյոք, հայկական էթնոսը

Հասկանալի է, որ 14,5 հազարամյակ առաջ գետը Հրազդան անվանած լեզուն հայերենն է, իսկ այդ լեզուն կրողը՝ հայ ժողովուրդը: Հետպատերազմյան երկրաբանական ճշգրիտ տվյալների հիման վրա կառուցված այս փաստարկը հայերիս ծագումնաբանությունը տանում է անհիշելի ժամանակներ. բառ կա, որ աշխարհ արժե:

Կարճառոտ այս հոդվածում չի վիճարկվում, առավել ևս քննության չի առնվում հայկական էթնոսի տեղաբնիկ լինելու հարցը: Հոդվածում փաստարկվում է, որ հայկական էթնոսը դեռևս անհիշելի ժամանակներում տեղաբնիկ էր Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևելքում, ապա և ողջ Հայկական լեռնաշխարհում: Արդեն իսկ վարկածային սույն դրվագների բացահայտման բանալին է Սևանա լճի երկրաբանական փոփոխության պարզաբանումը, ինչպես նաև Հրազդան գետանունը:

Ինչպես հայտնի է, Սևանա լիճն առաջացել է հրաբխային արտավիժումների և լավային պատվարի գոյացման հետևանքով: Նրան շրջափակող Արեգունի, Սևանի, Վարդենիսի, Գեղամա և Փամբակի լեռնաշղթաներն աստիճանաբար բարձրացել են և ստացել ժամանակակից պատկերը: Երկրաբաններն այս հնագույն լիճն ու նրանից սկիզբ առնող Հրազդան գետը պայմանականորեն անվանում են նաև Պալեոսևան և Պալեոհրազդան, քանզի, ըստ էության, հենց նրանց տարածքում են առաջացել «նոր լիճ» ու «նոր գետ»:



Մինչև Արարատյան դաշտավայր հասնելը Հրազդանը հոսել և հոսում է տեկտոնական ճեղքվածքով, տեղ-տեղ 100 և ավելի մետր խորության հասնող կիրճով:

Ինչպես նշվեց, Սևանա լիճը պարփակված է հինգ հոծ լեռնաշղթաներով, որոնց պարագծում և ողջ ջրավազանում երկրաբանական չորրորդական շրջանից ի վեր ամենացածր գոգավորությունը բաժին է ընկնում Փամբակի և Գեղամա լեռնաշղթաների միջանկյալ հատվածին: Վերջինս ծածկվել է հրաբխային նորագույն ժայթքումների ու լավային գոյացումների զանգվածային շերտով՝ մոտավորապես 14,5 հազարամյակ առաջ: Գոգավորության բարձրացման պատճառով, բնականաբար, բարձրացել է լճի մակարդակը, և նույն հատվածից սկիզբ առնող գետը վերստին հոսել է հին «պալեոհունով», քանի որ գոգավորությունը բարձրացումից հետո էլ մնացել է լճի ավազանի ամենացածր հատվածը:

Հենց այս ժամանակ սկսվում է այն իրողությունը, որից պետք է կառչի հայագիտությունը:

Ինչպես հայտնի է, գետն ունեցել է մի քանի անվանումներ, որոնցից առաջինն ու վերականգնված վերջինը Հրազդանն է:

Կարևոր ու խիստ հետաքրքրական է սույն ջրանվան ստուգաբանությունը, որի երեք բաղադրիչները պատմաերկրաբանական պատկերը ներկայացնում են ամբողջությամբ: Ստորև ներկայացվող այդ բաղադրիչները միանգամայն մեկնելի են ու հասկանալի հայերենով և հնդեվրոպական լեզուներով:

Եվ այսպես՝ Հրազդան...

Հուր – ըստ Աճառյանի, բնիկ հայերեն բառ է, որ ծագել է հնդեվրոպական նախալեզվի Պուրո-կրակ ձևից: Ցեղակից բառերն են հունարեն՝ Պիռ, լատիներեն՝ Ուռ, հին պարսկերեն՝ Հուռ, գերմաներեն՝ Ֆեուեր, հին ֆրանսերեն՝ Ֆեուր, քրդերեն՝ Ուր-

⊃10

# Մահաթմա Գանդի. 10 անգին խորհուրդներ



Իմ համակողմանի փորձն ինձ համոզել է, որ չկա ուրիշ Աստված ճշմարտությունից բացի: Ճշմարտության համընդհանուր և համազո ոգին հայցելու համար, հարկ է կարողանալ սիրել թշվառագույն մի արարածի՝ ինքն իրեն: Մարդը չի կարող իրեն թույլ տալ օտարվել կյանքի մի որևիցե ոլորտից: Ահա թե ինչու՝ իմ հավատարմությունը ճշմարտությանը հանգեցրեց ինձ քաղաքականության մարզին, և առանց նվազագույն տատանման ու դրա հետ մեկտեղ համակ խոնարհությամբ կարող եմ ասել, որ նա, ով կհաստատի, թե կրոնն ընդհանուր ոչինչ չունի քաղաքականության հետ, չգիտե, թե ինչ ասել է կրոն:

Mahatma-Gandhi1. Փոխեք ինքներդ ձեզ: «Շրջակա աշխարհը փոխելու համար դուք պետք է փոխեք ձեզ»: Եթե դուք կարող եք փոխել ինքներդ ձեզ, ապա դուք կփոխեք ձեզ շրջապատող աշխարհը: Եթե դուք փոխեք ձեր մտքերը, ապա կփոխվեն ձեր զգացմունքներն ու արարքները: Եվ դրա շնորհիվ աշխարհը կփոխվի ձեր շուրջը: Բայց ոչ միայն այն պատճառով, որ դուք կդիտեք աշխարհը նոր զգացմունքներով, այլ որովհետև փոփոխությունները թույլ կտան անել այն, ինչ դուք չէիք անի (հնարավոր է նաև մտածել եք այդ մասին) առաջ՝ կառչելով հին մտածելակերպից:

2. Վերահսկեք ինքներդ ձեզ: «Առանց իմ համաձայնության ոչ ոք չի կարող ինձ փասել»: Այն, ինչ դուք զգում եք և ինչպես եք արձագանքում, կախված է ձեզնից: Դուք կարող եք ինքներդ ընտրել ինչ մտածել, ինչպես արձագանքել և ինչ զգալ համարյա ամեն պարագայում: Ձեզ անհրաժեշտ չի դուրս գալ հունից, տաքանալ, կամ բացասական վերաբերվել:

3. Ներեք ուրիշներին և գնացեք առաջ: «Թույլերը ի վիճակի չեն ներելու. ներելու կարողությամբ օժտված են միայն ուժեղները: Առաջնորդվելով աչքը աչքին կանոնով՝ աշխարհի բոլոր մարդիկ կարող են կուրանալ»: Չի կարելի օգնել մեկին՝ պայքարելով չարի դեմ իր մեթոդներով:

4. Ձեռքերը ծալելով դուք ոչնչի չեք հասնի: «Սեփական փորձի մեկ գրամը ավելի թանկ է, քան ուրիշի մեկ տոննան»:

5. Հասկացեք, մեզնից ամեն մեկը մարդ է. «Ես ինձ համարում եմ հասարակ մարդ, ով ուրիշների նման է և ինչպես բոլոր մահկանացուները ունի սխալվելու իրավունք: Եվ միաժամանակ խոստովանում եմ, որ իմ մեջ կա բավականին շատ մարդկություն՝ ընդունելու իմ սխալները և հասկանալու դրանց պատճառները: Իմաստուն չէ համարել մեկին մյուսից խելացի: Միշտ պետք է հիշել, որ նույնիսկ ամենաուժեղ մարդը կարող է դառնալ թույլ, և ամենախելացին էլ սխալվել»:

6. Եղեք համառ: «Սկզբում նրանք անտեսում են քեզ, հետո ծիծաղում են քո վրա, հետո կռվում են քեզ հետ, և այդ ամենից հետո դու հաղթում ես»: Եղեք համառ, ժամանակի ընթացքում անախորժությունները կքչանան, իսկ հետո ընդհանրապես կանհետանան:

7. Հիշե՛ք, հումորը օգնում է դարձնել կյանքը ավելի թեթև, նույնիսկ ամենածանր պահին: «Եթե ես չունենայի հումորի զգացում, ես ինքնասպան կլինեի շատ տարիներ առաջ»:

8. Փնտրեք մարդկանց մեջ բարին և օգնեք նրանց: «Ես աշխատում եմ տեսնել մարդկանց մեջ միայն լավը: Ես ինքս շատ անգամներ սայթաքել եմ կյանքում և հարկ չեմ համարում դատել ուրիշի արարքները: Ես ընդունում եմ, որ նախկինում մարդկանց քո հետևից տանելու կարողությունը կախված էր ուժից, բայց այսօր այն կախված է մարդկանց հետ համաձայնության գալուց»:

9. Եղեք ներդաշնակ: «Երջանկությունը այն է, ինչ որ դուք խոսում եք, մտածում եք և անում եք իրար հետ ներդաշնակ: Միշտ ձգտեք հասնել ամբողջական ներդաշնակության (մտքերը, խոսքերը, արարքները): Ձգտեք մտածել անկեղծորեն, և այդ ժամանակ ամեն ինչ լավ կլինի»:

10. Շարունակեք աճել և զարգանալ: «Անընդհատ զարգանալը՝ դա կյանքի և մարդու օրենքն է»:

---

*9Ͻ*

կրակ նշանակությամբ, և բոլորն էլ, հայերենի հետ համեմատած, առավել ուշ շրջանի կազմություններ են:

Ազ (Ազն) – ազգ, սերունդ, ցեղ, ծագում նշանակությամբ, օրինակ՝ թագավորազն, արքայազն, իշխանազն, դյուցազն, երկազն, Հայկազն և հայկազն՝ հնդեվրոպական Զան-ծնել արմատից, որի ցեղակից բառերն են իրան. Զանա, հուն. Գենոս, լատ. Գենս, Գենուինոս – ծնունդ, ծագում նշանակությամբ, դրանից էլ վրաց. փոխառությամբ Ազնավուրի՝ Թամարա թագուհու արքունիքում ազնվական ծագումով հայ ազատանի կամ ազնվական նշանակությամբ:

Դան – ըստ գերմանացի նշանավոր լեզվաբան Մաքս Ֆասմերի, հնդեվրոպական նախալեզվում, վեդո կամ դոն-գետ, ջուր, որից էլ Դոն գետանունը, նույնի հունարենը՝ Տանայիս Հերոդոտոսի և Ստրաբոնի երկերում, զենդ Ավեստայի դանու-գետ, որից՝ Դանուբ, Դունայ գետանունները հնդեվրոպական լեզուներում, օսերենում՝ դոն, դան (վերջինը՝ հյուսիսային բարբառով) – գետ, սանսկրիտ. Ուդա-գետ և այլն:

Ստացվում է, որ Հրազդան՝ Հուր-ազ(ն)-դան հիդրոնիմը նշանակում է հրից, իմա՝ հրաբխից ծագած ջուր կամ գետ: Անվանումը միանգամայն համապատասխանում է երկրաֆիզիկական անցյալ իրադարձություններին: Նման անվանումը կարող էր տալ միայն այն ժողովուրդը, որն ականատես էր եղել 14,5 հազարամյակ առաջ տեղի ունեցած հրաբխի ժայթքումին, իսկ այնուհետև՝ այդ նույն փակուղուց գետի նոր ելքին:

Անշուշտ, երևույթն ունեցել է նաև աղետաբեր հետևանքներ, ինչի պատճառով այն դաջվել է տեղաբնիկ ժողովրդի հիշողության մեջ, ջրանվան միջոցով փոխանցվելով սերնդեսերունդ:

Հասկանալի է, որ 14,5 հազարամյակ առաջ գետը Հրազդան անվանած լեզուն հայերենն է, իսկ այդ լեզուն կրողը՝ հայ ժողովուրդը:

Հայ ժողովրդի տեղաբնիկության մասին վաղուց ի վեր որևէ կասկած գոյություն չունի, քանզի ապացուցված իրողություն է, սակայն հետպատերազմյան երկրաբանական ճշգրիտ տվյալների հիման վրա կառուցված սույն փաստարկը հայերիս ծագումնաբանությունը տանում է անհիշելի ժամանակներ:

Բառ կա, որ աշխարհ արժե:

*Արթուր ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ*

---

**Պրոֆեսորին ասում էին՝ պրոֆեսոր, կռազի վարորդին՝ կռազի վարորդ**

Օլիմպիադա 80-ին մենք առաջին կուրսի ուսանողներ էինք: Ռոմանտիկ դարաշրջան էր: Չնայած կյանքը հեղեղված էր Բրեժնևի մասին բարեհոգի անեկդոտներով, սակայն իրերը դեռևս կոչվում էին իրենց անուններով, պրոֆեսորին ասում էին՝ պրոֆեսոր, կռազի վարորդին՝ կռազի վարորդ, գրպանահատին՝ համբալ: Մոսկովյան օլիմպիադան վերջին մեծ տոնախմբությունն էր Սովետ Միության կյանքում: Երկու տարի անց Բրեժնևը վախճանվեց, և Կրեմլի պատի տակ թաղեցին մի ողջ դարաշրջան՝ սոցիալական ապահովվածության և բարոյական պարզամտության մաճողրոների դարաշրջանը: Եկած նոր դարը շրջեց ամեն բան, պրոֆեսորները դարձան համբալներ, իսկ գրպանահատները՝ պետական կարևորության գործիչներ:

Մտածում եմ՝ այս մի Օլիմպիադան էլ հանկարծ չդառնա՞ նոր փոփոխությունների պերճ մունետիկ՝ ազդարարելու անգլուխ ձիավորների և փչովի իգիթների դարաշրջանի ավարտը:

*Վարդգես ԴԱՎԹՅԱՆ*

# Երբ Մտավորականությունը ՍՏԵՐՋ ՄԻՋՈՒԿ է դառնում զանգվածների և իշխանության մեջ

Մի փոքր անդրադարձ ազգիս ոչ թե իրական Մտավոր միջուկի, այլ անկախության տարիներից մեզ հասած «մտավորԱԿԱՆ-ության» վերաբերյալ...

Ցանկացած քաղաքակիրթ, հնագույն պատմություն ունեցող երկրներում, մտավորականությունը կազմում է Ազգի գեներատորը, և սա այն դեպքում, երբ վտանգված է մշակույթը, մտածելակերպը, զարգացման նպատակները... սակայն այն, ինչ մենք ունենք այսօր՝ բուրժուական «ինտելեգենցիայի», նմուշ է հիշեցնում...

Դեռ անկախությունից հետո, շատ «մտավոր անհատներ» իշխանության չիների տակ մտան, ընդհուպ կուսակցականացվեցին, այնքան, որ ձոնեցին նոր «երգեր» այդ կուսակցությունների մասին, մի մասը ներխուժեց չեզոք լրատվամիջոցներ, շոու-բիզնես՝ ասել է թե «փրացվեցին»... Իսկ առավել ազնիվները Տեր լինելով իրենց երկրին, հաղթանակեցին գոյապայքարի պատերազմում՝ նահատակվելով, կամ էլ ուղղակի գործունեությանը կույլ չգնալու համար ուղղակի ընդհատակվեցին...

Այն, ինչը մնաց ու բուրժուացվեց, ուղղակի դադարեց վերնախավ լինելուց, դարձավ Ստերջ, Անպտուղ, Անկենդան՝ ասել է թե Չեզոք զանգված, որը թերևս առավել քան անընդունելի է...

Իրական մտավորականության շարքերը նոսրացան այն աստիճան, որ կենդանի մնացած Անհատներից շատերի ՄԱՀՆ անգամ դարձավ միօրինակ ընդունվող գույժ... առանց իրական կորստի չափը ընկալելու ու գիտակցելու...

Արդյունքում, այդ նոսրանալուն զուգընթաց, սկսվեց արատավոր մշակույթի ու մերօրյա թերարժեք մտավոր շերտերի վերարտադրումը... ըստ էության, այն մի զանգված էր հիշեցնում, որի միտումը հիմնականում բնազդներին, ոգու նսեմացման, առավել էժան հոգեվիճակին, ավելի ևս հեդոնիզմին հասցնելու խնդիրն էր...

Այսօր մեր երկրում իրական մտավորականություն երևույթի առավել քան անհրաժեշտությունը կա՝ իսկ դա նույնն է թե կորել է ազգի միտքը, պատիվն ու խիղճը:

Այն ԻՐԱԿԱՆՈՒՄ ՀԱՄԱՍԵՌ ՉԵԶՈՔ ՄԻՋՈՒԿ է դարձել զանգվածների և իշխանության մեջ:

Ամփոփելով նշեմ, որ ազգի գոյատևման, տեսակի ու մտածելակերպի գեներացիայի արդյունքում իրոք մեծ է ՄՏԱՎՈՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ երևույթի ԿԱՅԱՑԱԾ լինելը... դրա բացակայությունը, դիֆիցիտը, չեզոքությունն ուղղակի վտանգում է հանրության առողջ կենսագործունեությունը, քանի որ, արդյունքում հայտնվում են Տեսակին ԱՆՀԱՄԱՏԵՂԵԼԻ ՕՏԱՐ ՄԱՐՄԻՆՆԵՐ, որոնք ոչ միայն կարճաժամկետ պատրանքի հաճույք են ապահովում, այլ նաև ուղղակի վտանգում են ԱԶԳԻ իմունային համակարգը...

***ՀԵՏԳՐՈՒԹՅՈՒՆ.*** Հայ ազգը վաղուց է ապացուցել, որ գիտի գոյատևել ու նաև ԱՊՐԵԼ, արժանավայել... սակայն, եկեք ամեն մեկս, ով պատասխանատվություն է զգում երկրի ու մեր տեսակային ազնիվ կոդի առջև՝ թույլ չտանք այլևս Գոյատևելու ու այլևս մեզ խեղելու ու կեղծ պատրանքներով հաճույք վերարտադրելու, որն առավել քան ուղին է ինքնասպանման...

Ապրել է պետք, նույնքան արժանի, ինչքան որ ԿԱՆՔ...

***Լյուդմիլա ՄԻԼԱ***

# Դըբա լավը, բայց... վաղը




Ուու՜խ, ոնց է բախտս բերում, որ 1974 թ.-ից առաջ եմ ծնվել: Թե չէ՝ էս ցուրտ-բորանին հասնելու էի Ազգային ժողով, որ գոռայի՝ «Ո՛չ կուտակայինի՜ն...»:

Բայց ախր՝ ինչո՞ւ ոչ: Նորություն է՞, երեխա ժամանակներս ձեռքներս ընկած կոպեկը բանկայի մեջ էինք գցում, ամիսներով կուտակում էինք, որ հեծանիվ առնենք, բայց մի օր էլ պապան ու մաման հանում էին, թե՝ փող է պետք... Իշխանությունն ուզում է մեր մանկական հուշերն անմոռաց պահել, դրանից լավ բա՞ն: Ուղղակի պարապ ենք մնացել, սկսել ենք միտինգ անել. «150 դրամին՝ ոչ», «Գազի պայմանագրին՝ ոչ», «Մաքսային միությանը՝ ոչ», «Փակ շուկային՝ ոչ», «Ջվարթնոց» օդանավակայանին՝ ոչ», «Միասեռականությանը՝ ոչ», «Գենդերին՝ ոչ»... Ինչքան կուզես գոռա, 100 անգամ գոռա, 1000 անգամ գոռա, միլիոն անգամ գոռա: Քո միլիոնանոց «ոչ»-երին իրենք մի թաք «այո» են ասում ու պը՜րծ: Որովհետև դու քո «այո-ոչ»-ը ընտրությունների ժամանակ իրենց ես տվել: Չես էլ տվել, բիրիկով ծախել ես: Իսկ գնված ապրանքը հետ չի վերադարձվում:

Էն օրը մի միտինգավոր ասում է՝ մեզ էշի տեղ են դրել: Ասում եմ՝ ա՛յ ախպեր, սխալ բան մի խոսա, բա ինչո՞ւ են 2014-ը ձիու տարի հայտարարել: Ասում է՝ դիտմամբ են անում, որ հունվարի 1-ից պետպատվերով մեզ նալեն... Բողոքավոր է, սխալ բաներ է խոսում: Իսկ իմ կարծիքով՝ մեզ ոչ մի կենդանու տեղ էլ չեն դնում: Բնությունը դեռ այդպիսի կենդանի չի ստեղծել, որ մեզ հետ համեմատվի՝ արագիլից լավ չվում ենք, սով ու ծարավին ուղտից լավ ենք դիմանում, արջի պես մուշտակով փաթաթված քնում ենք, խոզի պես միայն մրթմրթում ենք, կովից լավ կթվում ենք և տիրոջ նկատմամբ ավելի մեծ հավատարմություն ունենք, քան շունը:

Ոչ ոք թող չհամարձակվի մեզ էշի հետ համեմատել: Էշը բանող անասուն է, իսկ մենք գործազուրկ ենք:

Ազգային ժողով ունենք, աշխարհը չունի: Իսկը՝ սերիալ: Կեսից ավելին մեկը մեկի խնամին է, բայց տես, թե ամբիոնից ոնց են իրար հայհոյում: Բա ո՞նց. թողնեն ուրիշները հայհոյե՞ն, նրանք էդ պատվի տերն ե՞ն... Իսկ մե՞նք, Նոր տարի է գալիս, փոխանակ մտածենք, թե ում տուն գնանք՝ մի կուշտ փորով հաց ուտենք, ժողովրդին ապակողմնորոշում ենք՝ ո՛չ, ո՛չ, ո՛չ... Դեռ լավ է՝ էդ Յ1-ը կա, միացնում ես, ու կյանքը երջանի՜կ, լի՜, բո՜լ... Մեկ-մեկ էլ առողջապահական թեմայով են հաղորդումներ տալիս, ու պարզվում է, որ սոված մնալով կարելի է բոլոր հիվանդությունները բուժել:

Ամանորին մարդիկ միմյանց առողջություն են մաղթում, կարո՞ղ եք ասել՝ ինչու: Որպեսզի բժիշկները գործազուրկ մնան: Նրանց հասնում է: Հնուց ի վեր հայտնի է՝ ատամնաբույժը, քիթ-կոկորդի մասնագետը երբ այցելուին ասում էին՝ բաց, հիվանդը բերանն էր բացում, թերապևտն ասում էր՝ հանվի, շնչառությունդ պիտի լսեր: Հիմա էլ են նույնն ասում, միայն այն տարբերությամբ, որ երբ ասում են՝ բաց, դրամապանակդ պիտի բացես, իսկ երբ ասում են հանվել, էնպես են տկլորացնում, որ մորեմերկ ես մնում...

Լավ, լավ: Նոր տարի է գալիս, եկեք լավ բաներից խոսենք: Օրինակ՝ կուզե՞ք ձեզ մի անեկդոտ պատմեմ, ուրախանաք... Ուրեմն մի օր, հայկական խոզը գնում է աֆրիկական կոկորդիլոսի տուն, թե՝ ինձ լողալ սովորեցրու, որ ես էլ արժանանամ մեր իշխանավորների սեղանի զարդը լինելու պատվին:

Կոկորդիլոսը պատասխանում է.

– Ա՛յ ընկեր, լողալը հե՜չ, դու սողալ սովորի...

Էդ ինչի՞ չեք ծիծաղում... Դե լավ, մի ուրիշը պատմեմ: Մի օր մի էշ մեկ ուրիշ էշի ասում է.

– Լսիր, էն մեր Ազգային ժողովի դեպուտատը քո հորեղբոր տղեն չի՞:

– Հա:

– Բա ինչու ա առյուծի պես քայլում:

– Ես ի՞նչ իմանամ, նա էլ էդ ձևով ա իշություն անում:

Էլի չծիծաղեցիք: Բա ո՞նց անեմ, որ ձեզ մի քիչ զվարճացնեմ: Գտա, փորձված մեթոդ է. 2014-ին, ամեն օր, բաց չթողնեք, հա՜, ամեն Աստծո օր, մեր կառավարության հետ կրկնեք.

– Էսօր վատ է, վաղը լավ է լինելու...

***Սամվել ԽԱԼԱԹՅԱՆ***

# Ես բութ եմ, դրա համար էլ միշտ վերևում եմ գտնվում՝ ինչ հասարակարգ էլ լինի. սեղանապետ են ընտրում

«Մեր սեղանից Ձեր սեղանին

Կետադրական նշանները Նոր տարվա ճոխ սեղանին.

– Եկեք նախ սեղանապետ ընտրենք, – բազմության միջից առաջարկեց բազմակետը:

– Առաջարկում եմ բութին, – բացականչեց բացականչականը:

– Բացականչականին, – շեշտեց շեշտը:

– Շեշտին, – բութ-բութ ասաց բութը:

– Ապաթարցին, – ոտքը կախ գցեց կախման կետը:

– Ապաթարցը հարմար չէ, նա սփյուռքահայ է, հին արևմտահայ ուղղագրության ներկայացուցիչ, նա թող իր սփյուռքում թամադա լինի, – ստորաբար առարկեց ստորակետը:

– Տղեք, ոնց եք վեր կենամ ու բոլորիդ մեկ-մեկ գիրկս առնեմ, փչացնեմ, դնեմ մի կողմ: Առանց ինձ ի՞նչ սեղանապետ, ի՞նչ պաշտոնյա, – ներքինիի պես ծվաց չակերտը, ու բոլորը իրենց հարձ զգացին մի պահ:

– Լավ, չակերտն էլ թող պարի գծով լինի, այսինքն՝ մշակույթի պատասխանատուն լինի, – գործը դրստեց կախման կետը, – ում ուզի կգրկի, ում ուզի՝ կթողի:

– Տղերք, մի բան ասեմ, բայց չնեղանաք, ես բութ եմ, դրա համար էլ միշտ վերևում եմ գտնվում՝ ինչ հասարակարգ էլ լինի: Այնպես որ ես համաձայն եմ:

– Ճիշտ է, ես բութ չեմ, փոխարենը՝ ըժժան եմ, բացականչելու համար մի հատ եմ, ու ես էլ եմ միշտ վերևում, այնպես որ ինձ ընտրեք:

– Մի րոպե, մի րոպե: Կարող է ես վերևում չեմ, ես եմ շեշտում ու ընդգծում իմ բութ ու ըժժան ընկերների արածն ու չարածը: Առանց շեշտի ի՞նչ սեղանապետ:

– Ճիշտ է, – միջակությունների միջից համաձայնեց միջակետը, – եկեք բութին սեղանապետ ընտրենք, իսկ շեշտին ու բացականչականին՝ տեղակալներ:

– Ճի շտ է, – համաձայնեց փակագիծը ու բացեց իրեն, – ինչ էլ ուզում է լինի, մեկ է՝ վերևում լինելու համար պիտի լինես շեշտված բութ ու ըժժան: Իսկ սրանք միշտ էլ վերևում են ու վերևում:

– Բայց սրանք առանց մեզ ի՞նչ պիտի անեն. եթե ստորություն է պետք անել, ինձ են դիմում՝ ստորակետիս: Ընդունելության քննությունից կտրելուց մինչև մարդուն կախաղան հանելը իմ միջոցով է արվում:

– Սրանք հենց բան չեն ունենում ասելու, ինձ են մեջտեղ բերում, որպես բազմության ձայն, – ինքն իրեն խոսում էր բազմակետը:

– Սրանք վերևում չէին լինի, եթե ես չլինեի, ես կուսակցական նշան եմ՝ ինչի վրա դնես բաժանում եմ, կիսում եմ, տրոհում եմ, մասնատում եմ. կեսը էս կողմս եմ զցում, կեսը տանում եմ մյուս կողմ, մի խոսքով, ում ուզում եմ, տողադարձ եմ անում:

– Բա ես ի՞նչ ասեմ. ինչ հիմարություն ուզում՝ անում են, ինչ հիմարություն ասես՝ գրում են, վերջում ինձ են կանչում, թե՝ դուռը փակի, վերջակետ դիր, նորից ենք սկսելու, – եզրափակեց վերջակետը»:

*Վաչագան ՍԱՐԳՍՅԱՆ, գրող, «Գ-րդ հրաշալիք» շաբաթաթերթի հիմնադիր ու գլխավոր խմբագիր*

# ԾՈՎԻՑ ԾՈՎ ՀԱՅԱՍՏԱ՞Ն, ԹԵ՞ ՕՎԿԻԱՆՈՍԻՑ ՕՎԿԻԱՆՈՍ ՀԱՅՈՒԹՅՈՒ՞Ն

Հարցականի հայեցի ականջները՝ ականորսի հատկություն ձեռք բերած, արձագանքում են միայն հասկանալիին: Թեպետ Լոս Անջելեսը լեզվախառնարան է, իսպաներենը իր տակն է առել Բրոդվեյը: Եվ ոչ միայն փողոցն է խոսում, այլև սփռվում է մեքսիկական երգը և աիագին երկնաքերեր, ոչինչ անել չեն կարող իրենց անգլոսաքսոն հզորությամբ: Թվում է, ահա, ուր որ է, իսպաներենը պիտի ձայն տա վերին հարկերից, իսպաներենի արանքում, գոնե Բրոդվեյում, անգլերենն է ալիք տալիս… Չինարենն է տեղատվության ու մակընթացության մեջ… Ու այս լեզվախառնարանում երբեմն-երբեմն հայերենի փսփսուքն է Հարցականի լսողությանը հասնում. մի տեղ՝ փոքր-ինչ բարձր, մի տեղ՝ որբավարի…

Արևմտահայերենն ու պարսկահայի երկարաձգվող ձայնավորը, բաքվեցու ռուսերենը, և, վերջապես, երևանցու խոսքը… Հայաստանցու խոսոր, պարտադրված անգլերենի կողքին հայերենը նրա տնկավարի զրույցն է, հոգու հանգիստը: Բայց խոսողների քայլքը երկչոտ չէ… Երևանի «խառոշ» տղերքն են, որ Հայաստանի պատառն են բերել Բրոդվեյ: Ամեն ինչից երևում է, որ նրանցից և ոչ մեկը հոմլեզ չի դառնալու, մուրացկանություն չի անելու: Կարելի է կանխատեսել, որ նրանցից ոմանք մեծ բիզնեսով կզբաղվեն, կմտնեն քաղաքականության ոլորտը, որտեղ աշխարհի բախտն է ուղղություն ստանում, որի մեջ է իրենց հայրենիքը, ավելի հասարակ՝ ծննդավայրը և չեն մոռանա նրա մասին:

Նոր հայաստանցիների ճամփան ավելի կարճ է, քան առաջին գաղթականների, որոնք փախչում էին օսմանյան սրից, և երկար ժամանակ էր պետք, որ դուրս գային իրենց արյունոտ շապիկի միջից, կազմեին համայնք և հավաքվեին եկեղեցու շուրջը: Նորերը 88-ի շունչն են կրում: Սկիզբն ուրիշ է, ժամանակը՝ ուրիշ: Ճամփան՝ մի այլ բանի համար: Նրանք գալիս էին նվաճված քաղաքակրթության կենտրոնը, և նրանց փախստական անվանելը մեղք է: Նրանք ինչ-որ բանով նման էին Ամերիկայի առաջին պիոներներին, որոնք ոսկու և ազատության համար էին գալիս, իսկ մերոնք, ավաղ, թերևս՝ բարեկեցության: Երևույթը բնական է, հասկանալի: Ճապոնացին է այստեղ գալիս, և՛ գերմանացին, և՛ ֆրանսիացին: Եվ ազգային ամբիոնից դատափետելը կենսահաստատ բանականությունից դուրս է: Իհարկե, եթե չլիներ մի հանգամանք: Այդ հանգամանքի մասին երկմտանքը ես՝ Հարցականս, կառաջաբանեմ մի, ինձ համար բանաձևանման մտքով: Հրեան քանդվում է արտաքնապես՝ ներսում պահպանելով իր անիմանալի ազգային խորհուրդը, հայը՝ պահպանելով իր արտաքինը, քանդվում է ներսից: Իսկ ներսում գտնվում է իր նախագոյը, որը իր պապերն են և իր երեխաները, թոռներն ու ծոռները, մեծ հաշվով՝ իսկական ինքը: Եվ միայն ՄԵԾ ՄԱՐՄՆՈՎ կարելի է մտնել նեղ դռան անվերջանալիություն: Լոս Անջելոսը, այս աղմկոտ փողոցները, այս առարկայական լիությունը ևս կվերջանան, երկնքի չափերով՝ շատ շուտ, և պետք կլինի այստեղից ևս մեկնել լույսի տիրույթ…

Բրոդվեյի ոսկերչական խանութների փայլի տակ մեծ մասամբ հայեր են: Հուսով ենք, որ մամոնան կուլ չի տա նրանց: Քանզի գերեզմանը, միևնույն է, փայլ չունի, և Աստծո մոտ ասեղի անցքով անցնելու հարկ չի լինի:

Հայությունը տակավին պահպանած հայերը և, հատկապես, նոր հայաստանցիները դեռ երկար ժամանակ պիտի կարոտախտից տառապեն, բնական է… Նրանց մի բան է մնում՝ դեպի Հայաստան ճանապարհը (ես չեմ հանդգնում ասել անիրական բառը՝ վերադարձ) հեշտ լինի և Հայաստան ասելու և կարոտելու փոխարեն հայություն ասեն և կարոտեն իրար: Ահա այստեղ է, որ ես ինձ մխիթարում եմ ապագայի հարցով և ինքս ինձ, մի քիչ խեղճացած, մի քիչ ուտոպիայով տարված, նեղ վիճակից դուրս պրծնելու ճիգերով երկբայում եմ՝ «Ծովից ծով Հայաստա՞ն, թե՞ օվկիանոսից օվկիանոս Հայությու՞ն»: Եվ ձեզ եմ ներկայացնում այս լավատեսական երկմտանքը, քանզի ուրիշ ելք չունեմ, ես՝ ոչ քաղաքական գործիչս, Հարցականս, որ իմ նախնիներից շատերի նման, հայկական տառապանքի ծուղակն եմ ընկել և միջոցներ եմ փնտրում դուրս պրծնելու համար: Եվ որ այսօր հետապնդում եմ պարանոյա դարձած ցանկությունս, քանզի դա է միայն մնում իմ ուտոպիայի համար. հայը չպետք է քանդվի իր ներսում:

***Աղասի ԱՅՎԱԶՅԱՆ***

# «Ես ունեմ հայրենիք, բայց չունեմ պետություն»

Հայաստանում բիզնեսը, տունը կորցրած Հրայրյան, որն այժմ բնակվում է Ֆրանսիայում, կվերադառնա հայրենիք, եթե մարդիկ օրենքով պաշտպանված լինեն: «Մեր էս քյարթու մտածելակերպով պետություն չենք դառնա: Այ, օրինակ՝ այսօր ծխախոտիս մացորդը երբ գցեցի եւ աղբամանը չընկավ, կռացա եւ վերցրի, այնտեղ կանգնած մարդիկ քմծիծաղ տվեցին, եւ ես դրանից կոմպլեքսավորվեցի, ինչը որ Եվրոպայում չկա: Այնտեղ երբեք քեզ վրա չեն ծիծաղում, որովհետեւ նրանք սիրում են իրենց պետությունը: Հայաստանից հեռանալուցս 12 տարիների ընթացքում ավելի վատ փոփոխություններ են եղել՝ ինչպե՞ս վերադառնամ: Հայաստանում եթե լինի հավասարություն, որ ես ինձ հավասար զգամ ու տեսնեմ օրենքի գերակայությունը՝ կվերադառնամ, անշուշտ կվերադառնամ», - «Առավոտի» հետ զրույցում ասում է Հրայրյան: Նա Հայաստանից հեռացել է 32 տարեկանում, այժմ Հրայրյան 44 տարեկան է: 12 տարի ապրում է Եվրոպայում: Սկզբում՝ Գերմանիա, ապա տեղափոխվել Ֆրանսիա: Արտագաղթելու որոշում կայացրել է, երբ սեփական փորձով համոզվել է՝ հայն իր հայրենիքում պաշտպանված չէ: «Երբեք մտքովս չէր անցնում հեռանալ հայրենիքից, ունեի փոքրիկ բիզնես, որով եւ ապահովում էի ընտանիքիս քիչ թե շատ բարվոք կյանքը: Երբ պահը եկավ բիզնեսս մեծացնելու՝ թիկունքից հարվածողները շատացան: Դե, մենք հայերով համառ ու չկամեցող բնավորություն ունենք, որի պատճառով չենք նկատում մեր կողքին ապրող այն մարդկանց, որոնք տարիներ հետո դառնալու են բոլորիս պարծանքը: Մինչեւ այդ մարդը կյանքից կամ երկրից չի հեռանում, չենք ափսոսում ու չենք արժեւորում նրան: Թող տպավորություն չստեղծվի, թե ինձ եմ գովում. շատերս ենք տեսնում, թե, բացի աշխատող ուժից, ինչ քանակությամբ արվեստագետներ են հիասթափված գնում Հայաստանից: Շատերի պես՝ ինձ էլ թույլ չտվեցին գոյության իմաստը գտնել իմ երկրում: Ես ոչ թե հիասթափված էի, այլ զայրացած. գործս իմ գլխին դարձավ փորձանք, ու անգամ տունս կորցրեցի, բայց նույնիսկ այդ դեպքում էլ չկարողացա օրենքով պաշտպանել ինձ: Ամեն ինչ նորից սկսելու հույսով գնացի երկրից», - պատմում է Հրայրյան: Ոչ օրինական ճանապարհով Հայաստանից մեկնած հայ միգրանտի համար արտերկրում էլ հեշտ չի եղել. մեծ դժվարությունների միջով է անցել, մինչեւ որ ոտքի է կանգնել, սակայն, ինչպես Հրայրյան է պատմում, ոչ մի անգամ չի նվաստացվել, միշտ օրենքով պաշտպանված է եղել՝ անկախ կարգավիճակից: Հրայրյայի պատմելով՝ Գերմանիայում ապրել է ճամբարում՝ առանց կեցության վկայականի: «Չիմանալով այդ երկրի լեզուն, անգամ վարք ու բարքերը՝ անում էի ամենատարբեր աշխատանքներ, միայն թե հետ չգայի: Աշխատում էի ու չէի ամաչում իմ աշխատանքից, քանի որ այդ երկրում մարդիկ հարգանքով են վերաբերվում աշխատող մարդուն, եւ կապ չունի, թե ինչ ես աշխատում: Ինձ հետ հավասար աշխատել եւ երբեք չեն նվաստացրել այն գործատուները, որոնց մոտ աշխատել եմ: Ի դեպ, այդ մարդիկ ավելի հարուստ են, քան այստեղի թվացյալ հարուստները», - ասում է Հրայրյան: Գերմանիայից Ֆրանսիա տեղափոխվելուց հետո Հրայրյան տեղափոխում է նաեւ ընտանիքին եւ մինչ օրս բնակվում այնտեղ: Ճիշտ է, կարոտը խեղդում է, բայց Հրայրյան չի ուզում հայրենիք վերադառնալ, մի տեսակ սովորել է ապրել օրենքի երկրում: Տարբեր գործեր անելուց հետո Հրայրյան ներկայումս Ֆրանսիայում ավտոմեքենաների առքուվաճառքի փոքրիկ բիզնես ունի, ազատ ժամանակ էլ սալիկապատման աշխատանքներ է կատարում: 2007 թվականից Ֆրանսիայում ստացել է կեցության վկայական եւ ներկայումս աշխատանքներ է տանում այդ երկրի քաղաքացիություն ստանալու ուղղությամբ: «Եվրոպացին գնահատում է աշխատող, կարգապահ մարդուն», - ասում է Հրայրյան. «Շուտով կդառնամ այդ երկրի քաղաքացի եւ, ինչպես իմ շատ հայրենակիցներ, կապրեմ հայրենիքիցս հեռու: Ես ունեմ հայրենիք, բայց չունեմ պետություն: Ես էլ միացել եմ այն բազմաթիվ մարդկանց, որոնք կարեւոր չէ՝ ուր եւ ինչի համար են գնում. փաստն այն է, որ գնում են իրենց հետ տանելով հայ մտածողին, կառուցողին, արվեստագետին, ի վերջո՝ այն երիտասարդին, ով պետք է շարունակի ապրել ու շենացնել երկիրը»: Ապրելով Եվրոպայում՝ եւ միանգամայն ընդունելի համարելով քաղաքակիրթ բարքերը՝ Հրայրյան գտնում է, որ Հայաստանը պետք է գնա դեպի Մաքսային միություն, քանի որ նրա համոզմամբ Ղարաբաղյան խնդրով Հայաստանը Եվրոպային պետք չէ, եւ որ ավելի լավ է՝ մի միության լիարժեք անդամ լինել, «քան տարիներով հերթ կանգնել եւ այդպես էլ չընդգրկվել եվրաընտանիք»:

*Անուշ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ, «Առավոտ» օրաթերթ*

# ՀԵՌԱՑՈՂ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՅՐԵՆԻՔԸ

Հիշում եմ մորս՝ գյուղում: Տան պատի տակ նստած, միայնակ, աչքը՝ ճամփին: Մի բուռ կին էր, մի քիչ հիվանդ, հորս մահից հետո՝ մարմրող մոմի լույս: Մենակ էր իր հուշերի, վաղուց մահացած մերձավորների ու մտերիմների ծնած դատարկության, մեր անփութության ու իր անսահման սիրո հետ: «Էկա՞ր, տղա ջան», – իր աշխարհից դուրս էր գալիս ու մեղավոր ժպտում ինձ, թեեւ ես էի մեղավորը, ես էի անվերջ հեռացողը և օրերս առանց իրեն ապրելու ինձ դատապարտողը:

Հիմա անսահման տխուր եմ, երբ հիշում եմ, թե ինչպես հերթական անգամ դավաճանում էի իրեն, հեռանում իրենից, գնում երիտասարդական մի աշխարհ, որտեղ ինքը չկար: Գնում էի ու իրեն մոռանում կամ ինձ համոզում, թե մոռացել եմ: Հիշում եմ նրա հայացքը, որ սիրով ասում էր՝ ե՞րբ ես մեկ էլ գալու: Խեղճ ու կրակ մերս, համով-հոտով մերս, սիրո ծով մերս: Չէի խրատվում, տարին տարվա վրա չէի խելոքանում, խույս էի տալիս ինքս ինձնից ու առավելապես իրենից, չգիտեի, որ քիչ է մնացել նրա երկրային կյանքին, քիչ է մնացել ամենաանկեղծ մարդուն:



ՄԻՆԱՍ ԱՎԵՏԻՍՅԱՆ. «Շեմքի մոտ»

Սիրտս լցվում է, բառերը դատարկ, սնապարծ բաներ են թվում: Ինչքա՜ն հույս կար ամեն հանդիպման ժամանակ նրա խաժ աչքերում, որ ես անընդհատ կտրում էի, մինչև կտրվեց նրա կյանքի թելը:

Ների՛ր, մերո ջան: Դու ինձ լավ գիտեիր, ես քեզ չգիտեի, դու ինձ նվիրված էիր, ես՝ բնավ, դու ինձ սիրում էիր, ես քեզ սիրում եմ հիմա, անսահման: Դու ինձ կարոտում էիր, մշուշոտ հայացքով ինձ քաշում էիր, տուն բերում, հետս զրուցում, գուրգուրում, իսկ ես հեռու էի: Հիմա ես կարոտում եմ քեզ քո կարոտով, քեզ հայացքով քաշում-բերում եմ ինձ մոտ, հետդ զրուցում, տխրում ու փլվում իմ ներսում:

Այսօր տեսնում եմ Հայրենիքից հեռացող իմ ընկերներին, բարեկամներին, երեխաներին ու թոռներին: Հեռանում են, այսօր մեր Հայրենիքը դարձել է հեռացող ժողովրդի հայրենիք: Այսօր ես իմ մայրն եմ՝ խեղճացած, այսօր ես իմ հայրենիքն եմ, որից հեռանում են, ու ես հարցնում եմ՝ ե՞րբ եք նորից գալու, ու մեղավոր ժպտում եմ ինձնից հեռացողներին, ներում եմ նրանց ու չեմ ներում ինձ, որ հեռանում են:

Ես կարոտում եմ, մեռնում եմ հուշերի աշխարհում, դատարկվող հայրենիքի երկինքը ավազի նման սորում է ներքև:

Ների՛ր ինձ, մա՛յր իմ:

*Վաչագան Ա. ՍԱՐԳՍՅԱՆ*

*Սամվել ԽԱԼԱԹՅԱՆ*

## ՎԱՎԵՐԱՊԱՏՈՒՄ

– Սա ի՞նչ կյանք ա... էլ հնար չկա, ես էլ եմ գնալու...

– Վազգեն, էն շանը հետդ տար, մեղք ա անասունը...





*Սամվել ԽԱԼԱԹՅԱՆ*

## ՆԱՄԱԿ ՉԾՆՎԱԾՆԵՐԻՆ

Դուք, որ կծնվեք և կգաք աշխարհ՝
որպես մունետիկ նորօրյա օրվա,
դուք, որ կըմբռնեք, թե ո՞վ եք եղել,
և ի՛նչ է կյանքը ձեզ համար հիմա,
երբ ձեր արյան մեջ, ձեր երակներում
կտանջի ցավը նախնյաց՝ դարավոր,
և կզիտակցեք, թե ի՜նչ երկիր ենք
ձեզ համար թողել պա՜նծ ու... ահավոր,
և երբ կանիծեք ձեր բախտը դժնի
պապակ շուրթերով՝ ցամքած ակունքի
չոր քարին նստած, -
չերկնչեք հանկարծ և չկարկամեք՝
մեզ էլ անիծել,
ձեր նախնիներին,
որ Հայրենիքի սերը դարձրած
ծածանվող դրոշ,
խոնարհեցին այն, ոտնատակ զցին
ճահճից դուրս ելած մի բուռ ամբոխի:

Եթե չանիծեք -
մեր հոգիները չեն գնա դժոխք,
և Տիեզերքում չի վերականգնվի
արդարությունը:

Մեր կույր, միամիտ, խեղճ ինքնությունը,
մեր հավատավոր և անմեղսունակ
անճարությունը,
թախանձը լալկան, մուրողությունը,
մեր ծոցից ելած իժերին ծոցում
ջերմ փայփայելու վախկոտությունը,
սին պարծանք դարձրած
համբերությունը,
և պատրանք դարձրած ծով- բարությունը,
ինքնախաբկանքի արմատը ջրած
իմաստնությունը...
Անիծե՛ք՝ առանց մի երկմտանքի:

Եթե չանիծեք-
մեր հոգիները չեն գնա դժոխք,
և Տիեզերքում չի վերականգնվի
արդարությունը:

## ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹՅՈՒՆ

Գոհանա՜մ Աստծուց:
Ինձ շատ է տվել,
և այդ շատի մեջ
շատուշատն, անշուշտ,
դու ես միշտ՝ եղել,
ինձ համար՝ շա՜տ-շատ,
ինձ միշտ պակասող,
իմ մշտաշատ սեր:

Իմ շատուշատից քիչումիչ տարել,
իրենցով արել,
պարզել են ի տես,
թե՝ տեսե՜ք, մենք էլ շատուշատ ունենք:

Իմ շատուշատի վրա զարմացել,
շատ հաճախ նույնիսկ չեմ գնահատել
հույժ արժանապես,
և ըստ արժանվույն,
սոսկ զարմացել եմ,
մի քիչ կասկածել,
որ իմն է, իմը՝ տրված ի վերուստ
խենթ ու խելառիս
ու թռի-վռի թրև եկողիս,
որ իր արևին
արդարացումի
բան է հնարել,
թե՝ ամենուրեք,
և այն ու ամեն, և՝ ամենայնի՜վ,
շա՜տ է կարոտում իր շատուշատին…

Մինչդեռ չես կարող
արևը վերցնել ու պահել

նավթի լամպի ապակում,
աստղերը համրել խիստ այժմեական
հաշվիչով անգամ,
երբ ճիշտը, որպես հրաբորբ արև՝
բարկ անապատում,
տեր-տիրական է դառնում
քո ապրած օրերին կարկամ…

Ա՜խ, իմ շատուշատ,
քո առջև գուցե
մեղա չեմ գալիս,
սակայն չեմ կարող Մեծ Ճշտի դիմաց
չծնկել խոնարհ՝ ապաշխարելով,
փառաբանելով.
- Գոհանա՜մ Աստծուց:
Ինձ շատ է տվել,
և այդ շատի մեջ
շատուշատն, անշուշտ,
դու ես միշտ՝ եղել,
ինձ համար՝ շա՜տ-շատ,
ինձ միշտ պակասող,
իմ մշտաշատ սեր:



«Ի սկզբանե էր...» գործ՝ Եվա Գաորգյանի

***

– Ասեք ինձ, կապտաչ, անուշիկ ջրեր,
իմ մահից հետո
խոխոջալու՞ եք դուք այդքան բարձր:
– Է՜լ ավելի զիլ, ավելի քաղցր...

– Ասեք ինձ, ազատ ու արձակ հովեր,
դուք, ինձնից հետո,
թափառելու՞ եք այդպես երգելով:
– Ավելի մեղմի՜կ, անու՜շ երգերով...

– Ծաղիկներ, պես-պես գույն ու բույրերով,
դուք, ինձնից հետո,
կծաղկե՞ք դարձյալ՝ այսքա՜ն հմայիչ:
– Է՜լ ավելի վառ, ավելի թովիչ...
– Արև կենսատու, ամենայն սկիզբ,
ինձանից հետո,
մի՞թե չես մարի խավար անդունդում:
– Անմար եմ, հավերժ՝ լուսեղեն երթում...

– Անուշիկ ջրեր,
ծաղիկներ քնքույշ,
հովեր՝ անդադրուն և թափառական,
և դու՝ արևդ, հա՜ր-հավերժական,
արդյոք, չգիտե՞ք,
իմ մահից հետո ու՞ր եմ գնալու:
– Մեզ մոտ ես գալու, մեզ հետ ես գալու...

16.01.2014 թ.

---

***ԼԵՌ ԿԱՄՍԱՐ***

## ԾՐԱԳՐՎԱԾ ԱՎԱԶԱԿՈՒԹՅՈՒՆ

Այսօր խոսակիցս սաստիկ կզարմանար, որ ասանկ աղքատ երկրի մը մեջ, ուր անգործություն միայն կա, ավազակություն չի պատահեր:

– Հանգի՛ստ եղիր, – ըսի, – այդ դերը պետությունն է վերցուցեր իր վրան ու կտանե ավելի ծրագրված, քան ավազակը:

***

Մեր դատավորները փոքր գողեր կարող են բռնել. մեծերից վախենում են: Հիշում եմ, երբ հեռավոր աքսորում ինձ նշանակեցին ցրենի պահեստին պահակ, աչքովս տեսնում էի, որ ամբարը դատարկում էին ոչ թե սովորական մկներ, այլ սոսկալի առնետներ, որոնց բռնելու համար ոչ մի կատու սիրտ չէր անում մոտենալ: Ճամբարի վարչությունը շներ կանչեց, նրանք էլ հեռու էին փախչում այդ հուժկու կրծողներից:

Այն «առնետները», որոնց սիրտ չեն անում մոտենալ մեր դատավորները, մեր մինիստրներն են ու չեկայի անդամները, որոնք օրը ցերեկով դատարկում են պետական ամբարներն առանց դատավորին մի գրոշ տալու:

### Առանց մազաչափ խղճահարվելու...

Ստալինի ողջ ժամանակը, ամբողջ քսաներեսուն տարի, գիշեր ու ցերեկ ես մտածում էի այն մասին, թե եթե Ստալինին բռնեն ու իմ ձեռքը հանձնեն՝ ես նրան ի՞նչ պատժով պատժեմ:

Այդքան մեծ ոճրագործի համար աշխարհի ոչ մի օրենսգրքում պատիժ չի նախատեսված: Ճիշտ այնպես, ինչպես հիվանդի ջերմաչափ շինողները չնախատեսելով, որ հիվանդը կարող է քառասուներեք աստիճան տաքություն ունենալ՝ ջերմաչափը քառասուներկու աստիճանից են կառուցել մինչև այսօր:

Հա: Ուրեմն ես ամբողջ երեսուն տարի Ստալինին պատիժ որոնեցի ու չգտա, իսկ այսօր, որ գտել եմ այդ պատիժը, ցավոք սրտի Ստալինն արդեն մեռել է: Գիտե՞ք ինչ պատիժ է գտածս: Ասեմ: Եթե այս րոպեիս Ստալինին կենդանի իմ ձեռքը տային, ես առանց մազաչա՛փ խղճահարվելու... կամուսնացնեի նրան կնոջս հետ:

# Սատանայի խորհրդապաշտությունը ամերիկյան դոլարի վրա. մասոնական գաղտնիքները բացահայտվում են

Շատերը, ցավոք, չգիտեն, որ մասոնների Աստվածը... Լյուցիֆերն է, Սատանան: Համապատասխան գրականության մեջ, օրինակ, Երեմեյ Պարնովի «Լյուցիֆերի գահը» գրքում (Մոսկվա, Քաղիրատ, 1991) կան տեղեկություններ այս մասին: Ասում են, թե ցածր աստիճանի մասոնները, ինչպես նաև մասոնական տիպի կամ մասոնական նպատակներին հասնելու համար ստեղծված կազմակերպությունների անդամները չգիտեն այդ սարսափելի ճշմարտության մասին: Մասոնների իրական Աստծո ով լինելու և այս առնչությամբ մասոնական կազմակերպություններ անդամագրվողների մեծամասնության բացարձակ անտեղյակության մասին գրել է նաև Արտավազդ Ավագյանը կամ այդ անուն-ազգանվամբ հանդես եկած անձնավորությունը դոկտոր Քետի Բերնեսին ուղղած իր 04.12.2003 թ. նամակում:

Կարելի է նաև ասել, որ մարդկությունը, չնչին բացառությամբ, տեղյակ չէ, որ Ամերիկայի Միացյալ Նահանգներն իրականում հիմնադրվել է մասոնների կողմից, այդ պետության հիմքերում նրանք են կանգնած: Շատերին է հայտնի Սատանայի և փողի աստծո (Մամոնայի) ընդհանրությունը: Թերևս պատահական չէ, որ մասոնները փողի վրա արտահայտել են իրենց առավել կարևոր խորհրդանիշները (սիմվոլիկան). Գուցե դրա՞նում նաև միստիկ ու սատանայական իմա՞ստ են դրել՝ մոգական հատկություն ենթադրելով կամ ակնկալելով, քանի որ մարդիկ հաճախ են շփվում փողի հետ՝ ունենալով այն իրենց ձեռքում կամ գրպանում, ծոցագրպանում և այլուր, մի խոսքով, փողից գրեթե անբաժան լինելով: Եվ նախկինում, և այսօր աշխարհում առավել տարածված ու հայտնի վճարամիջոցն ամերիկյան դոլարն է: Թերևս սա նախապես ծրագրելով է նաև, որ մասոններն իրենց խորհրդանիշները դրել են դոլարի վրա: Ընդ որում, կարծես սկզբունք լինի դրա համար ոչ թե մետաղադրամի, այլ թղթադրամի ընտրությունը: Ավելին. քանի որ մասոնները՝ որպես «ազատ որմնադիրներ» և «այս աշխարհի ճարտարապետներ», շատ են կարևորում հիմնաքարի գաղափարը, իրենց խորհրդանիշներն արտահայտելու համար ընտրել են դրամական համակարգի (այդ յուրօրինակ բուրգի) հիմքում, սկզբում գտնվողը՝ ամենափոքր դրամական միավորը: Չէ՞ որ մնացած, ավելի բարձր արժողության թղթադրամները դրան հաջորդում են, և այն, ինչ որ հիմքում է դրված, իր խորհրդաբանությամբ որոշիչ է դառնում ամբողջ համակարգի՝ դրամական բուրգի համար: ԱՄՆ-ի դոլարների պարագայում դա 1 դոլարանոցն է: Ավելի բարձր արժողության դոլարների վրա էլ միգուցե կան մասոնական ինչ-որ խորհրդանիշներ, սակայն վստահաբար կարող ենք ասել, որ դրանք կենտրոնացված են հենց 1 դոլարանոցի վրա: Մեզանում ոմանք, անտեղյակ դոլարի գաղտնիքին ու մինչև իսկ չնկատելով 1 դոլարանոցի վրա եղած խորհրդանիշները, կարծես 6-րդ զգայարանով իմանալով ճշմարտությունը, ասում են, որ դոլարը Սատանայի գործիքն է կամ զենքը:

Ովքեր քիչ թե շատ ծանոթ են մասոնությանը, գիտեն, որ «կրոնա»-քաղաքական այդ յուրօրինակ մաֆիայում գերիշխող է




խորհրդապաշտությունը: ԱՄՆ-ը մասոնների կողմից սկզբնապես և իմաստավորված կերպով հիմնվել է իբրև 13 նահանգների միություն: Ուշադրություն բևեռենք այս թվին, այն ունի մեծ խորհուրդ, որին կանդրադառնանք քիչ հետո: ԱՄՆ-ի առաջին դրոշի վրա 13 աստղիկ է եղել և 13 շերտ՝ երկու գույնի և միմյանց հաջորդող: Այդ 13 շերտն առկա է նաև ԱՄՆ-ի այսօրվա դրոշի վրա: ԱՄՆ-ի Կոնգրեսը 1817 թ. որոշում է ընդունել վերադառնալ 13 շերտին՝ անկախ նրանից, թե հետագայում քանի նահանգ կունենա ԱՄՆ-ը: Դրոշի և դոլարի բուն տերերի կողմից այնքան մեծ է 13-ի գործածումը, յուրօրինակ պաշտամունքը և դրան տված կարևորությունը, որ այդ թիվը՝ ծածկագրված ձևով, արտահայտված է նաև դոլարի չափերով: Ահավասիկ. ԱՄՆ-ի և 1 դոլարանոցի, և այլ արժողության թղթադրամների լայնքը 6,7 սմ է (6+7=13), իսկ երկարությունը՝ 15,7 սմ (1+5+7=13): Արտադրելիս հնարավոր է գործարանային չնչին շեղում նշված չափերից: Մեկ դոլարանոցի ետևի աջ կողմում պատկերված է ԱՄՆ-ի պետական գերբավոր կնիքը կամ գերբը, որի վերևի մասում արտահայտված է հնգաթև 13 աստղիկ: Թերևս դա կարող էր սովորական թվալ՝ իբրև ԱՄՆ-ի գոյության սկզբում 13 նահանգներից բաղկացած լինելու խորհրդանիշ, եթե չլինեին այլ փաստեր, որոնց համատեքստում պետք է դիտարկել այդ իրողությունը: Օրինակ, այդ 13 աստղիկը բաղկացած են «Դավթի աստղ» կոչվածի՝ իրար մեջ մտած երկու եռանկյան ձևով: Ի դեպ, վերոնշյալ աստղը ոչ միայն հրեաների ազգային և Իսրայելի պետական խորհրդանիշն է (ինչպես հայերիս պարագայում՝ Մասիսը), այլև ամերիկյան նահանգներից մեկի խորհրդանիշը կամ զինանշանը: Մի՞ թե հարց չի ծնվում՝ ԱՄՆ-ում և Իսրայելում ոմանք ի՞նչու են այդքան սիրում իրար հանդիպակաց, իրար մեջ մտած եռանկյունիների ձևով այդ վեցաթև աստղը:

Զինանշանում պատկերված արծիվն իր մագիլներից մեկով պահել է 13 հատ նետ: Դրանք ուղղված են նրանց դեմ, ում հակառակվում են, իսկ ավելի որոշակի՝ Աստծո դեմ, քանի որ «Սատանայի դյուժինը»՝ 13-ը ներկայացնող այդ նետերն ուղղված են և դեպի վեր, և դեպի աջ: Ընդամենը հիշենք, որ Քրիստոսը համբարձվելուց հետո բազմեց Հոր աջ կողմը: Ընդունված է, որ աջը հաջողության, առաջընթացի, բարու և Աստծո խորհրդանիշ է, մինչդեռ ձախը՝ ճիշտ հակառակը: Իր մյուս մագիլով նույն արծիվը պահել է մի ճյուղ, որը դարձյալ 13 բողբոջ և 13 տերև ունի: Արծիվն ինքը վահանավորված է ԱՄՆ-ի դրոշով՝ բաղկացած 13 շերտից: Գիշատիչ թռչունն իր կեռ կտուցով պահել է մի ժապավեն, որի վրա լատիներեն 13 տառերով գրված է՝ E PLURIBUS UNUN (բազմությունից դեպի միակը): Բազմությունը, կարծում ենք, ինքնին հասկանալի է, որ աշխարհի ազգերը, ժողովուրդներն են, իսկ միա՞կը... Այդ ժապավենից մոտ կես սանտիմետր վերև պատկերված վեցաթև աստղը հուշում է, թե որպես էթնոս ովքեր և որպես գերագույն ուժ ով է այդ միակը: Արծիվը նայում է դեպի ձախ, որի խորհրդանշակա՛ն իմաստի մասին արդեն նշեցինք: Իսկ ի՞նչ է պատկերված ձախ կողմում... հայտնի բուրգն է՝ գագաթի եռանկյան մեջ շողարձակող աչքով, որից արծիվը, շողարձակմանը դիմահայաց նայելով, թերևս հայցում ու ստանում է իմաստություն:

ԱՄՆ-ի 1 դոլարանոցի ետևի ձախ կողմում ուղղահայաց 13 շարք քարերից բաղկացած բուրգի պատկերն է՝ծայրանկյունային հանված քարով և փոխարինված եռանկյան մեջ պատկերված ամենատես աչքով՝ մասոնական հայտնի խորհրդանիշով: Արտավազդ Ավագյանի վերոհիշյալ նամակում ուշադրություն է հրավիրվում այն հանգամանքի վրա, որ հին մասոնությունը եռանկյունին սովորաբար օգտագործում է այդ աչքի հետ միասին: Մասոնական խորհրդանիշների մեջ, ըստ նրա, որևէ այլ խորհրդանիշ իր իմաստով դրանից ավելի մեծ նշանակություն չունի: Այն կոչվում է «Տիեզերքի Մեծ Ճարտարապետ»: Ամբողջական խորհրդանիշը բուրգն է, որի վերևում շողարձակող եռանկյան մեջ ամենատես աչքն է, ըստ Ա. Ավագյանի, «Սատանայի աչքը»: Հեղինակը տեղեկացնում է նաև, որ իմաստության տերերը (մասոնները) ուղղորդում են մարդուն մի ճանապարհով, որը տանում է համաշխարհային միասնական կարգի: Կարելի է հասկանալ, որ խոսքը Համաշխարհային կառավարության ստեղծման և նրա հաստատելիք կամ նախատեսված միասնական կարգի մասին է:

Արտավազդ Ավագյանն իր վերոնշյալ նամակում գրել է նաև իլյումինատների կազմակերպության մասին՝ հիմնադրված 1776 թ. մայիսի 1-ին, ճիզվիտ Ադամ Վայսհաուպտի կողմից: «Իլյումինատ» անունը վերցված է Լյուցիֆերից: Իլյումինատները, ըստ հեղինակի, նվիրված են եղել «Նոր Համաշխարհային Կարգին» կամ «Համաշխարհային Մեկ Կառավարությանը», որն այսօր ստույգ նպատակն է նրանց հետնորդների, գործը շարունակողների: Նամակագրի հավաստմամբ, ամեն մի 1 դոլարանոց թղթադրամի վրա կա թվագրություն՝ 1776 (այսինքն՝ իլյումինատների կազմակերպության ստեղծման տարեթիվը): Ա. Ավագյանի տեղեկացմամբ, այդ տարեթիվն է արտահայտում բուրգի հիմքի կամ առաջին շարքի քարեղին արտահայտվածը՝ MDCCLXXVI: Իսկ ո՞վ է եղել Ադամ Վայսհաուպտը...

Ըստ «Հակաքրիստոսի էլեկտրոնային խայթը» գրքում զետեղված դոկտոր Կոլ Սանդերսենի ելույթի (ք. Ապոկան, Վաշինգտոնի նահանգ, 1993 թ. ամառ), «1750 թ. հրեա Բաուերը զբաղվում էր ոսկու արդյունահանմամբ, ապրում էր Ֆրանկֆուրտում: Նրա ձեռնարկության ցուցանակը կարմիր վահան էր: Նրա որդին

➲16

15Ը

դարձավ բանկիր, փոխեց ազգանունը՝ Բաուերից Ռոտշիլդ, որը նշանակում է կարմիր վահան: Այդ բանկիր Ռոտշիլդն ուներ 5 տղա, որոնց մեկ առ մեկ ուղարկել էր տարբեր քաղաքներ՝ Լոնդոն, Փարիզ, Նեապոլ, Վիեննա, Ֆրանկֆուրտ, որպեսզի նրանք փողի միջոցով հսկման տակ պահեն այդ երկրները: 1775 թ. Ռոտշիլդը 12 այլ տղամարդկանց հետ կազմակերպել է «13-ի խորհուրդ»: Նրանք Ադամ Վայսհաուպտին ընտրել են խորհրդի ղեկավար: Ադամ Վայսհաուպտը (նշանակում է «սպիտակ գլուխ») պատկանում էր ճիզվիտների օրդենին (սատանայապաշտական կազմակերպություններից մեկը): Այդ խորհուրդը ներկայումս հսկում է ոչ միայն ԱՄՆ-ի, այլև ամբողջ եվրոպական համակարգը»...

Մեկ դոլարանոցի վրա պատկերված բուրգի տակ, ժապավենում գրվածը՝ NOVUS ORDO SECLORUM («Նոր համաշխարհային կարգ», կամ՝ «Ժամանակների նոր կարգ»), արտահայտում է Համաշխարհային կառավարության ստեղծմանը ձգտողների կարգախոսը: Արդեն հասկանալի է, որ խոսքը բազմությունից ընտրյալ մեկի, ավելի ճիշտ՝ նրա որոշ ներկայացուցիչների կարգախոսի և նպատակի մասին է: Ինչ վերաբերում է ընտրյալ լինելուն, դա անառարկելի է, այո՛, ընտրյալ են, միայն թե ամբողջ խնդիրն այն է՝ ում կողմից են ընտրված. Աստծո՞, թե Սատանայի...

Դարձյալ 1 դոլարանոցի ետևի (վերին) մասում գրված է՝ IN GOD WE TRUST, որը հայերեն թարգմանվում է «Աստծոն մենք վստահում ենք»: Ձեր մտքով երբևէ չի՞ անցել, թե «Աստված» բառն ի՞նչ գործ ունի մի այնպիսի իրողության հետ և իրի վրա, ինչպիսին դոլարն է: Այդքան քրիստոնյա հավատացյա՞լ էին ամերիկյան մայրցամաքի բնիկների ցեղասպանության հեղինակների ոչ հեռավոր հետնորդները, նրանց «շարունակողները»... Նրա՞նք, ում ժառանգներն, իրենց հերթին, երնի դարձյալ հավատալով ու վստահելով նույն կամ իրենց Աստծոն, մասոն Հարրի Թրումենի միջոցով չերկնչեցին Հերոսիմայի և Նագասակիի ատոմային ռմբակոծություններից: Եվ եթե այդքան հավատացյալ էին, ապա իրականում ո՞ւմ էին հավատում ու վստահում, ո՞վ էր իրենց Աստվածը՝ արարիչ Աստվա՞ծը, թե կործանման տանողը՝ «Սատանաաստվածը»: Այդ հավատացյալների «միսիան» շարունակողներն այսօր էլ նույն Աստծոն, նույն ուժին են հավատում ու վստահում: Նույն դոլարով (կաշառքներով, դրամաշնորհներով, վարկերով և այլն), նույն վաշխառությամբ (տոկոսով, շահով փող տալով, որը կործանարար թմրադեղ տալու է նման) նրանք, ըստ էության, ստրկացնում ու նվաճում են աշխարհը, թելադրում, որոշ դեպքերում էլ փորձում թելադրել իրենց կամքը՝ հետամուտ լինելով նոր աշխարհակարգի և համաշխարհային տիրապետության, իսկ այնուհետև՝ որոշակի քայլերի: Համաշխարհային կառավարություն ստեղծելը և աշխարհին տիրելը նրանց համար ոչ թե վերջնական նպատակ է, այլ միջոց՝ Սատանայի ղեկավարությամբ ու նրա զորախմբի կազմում Աստծո դեմ ելնելու, նրա փրկչական ծրագիրը խափանելու համար: Եվ եթե «Աստված» բառը դոլարի վրա է, և դոլարը, իր վրա եղած այդ «Աստված»-ով հանդերձ շատերի համար պաշտամունքի առարկա է, մի՞թե հասկանալի չէ, որ այդ աստվածը փողի աստվածն է՝ Մամոնան, Սատանայի «մասնագիտացած» դրսևորումը, որը զորեղ է շատերի եսամոլությամբ, գայթակղվելու թուլությամբ:

*Արթուր ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

## Աֆորիզմներ ուսուցիչների մասին




Ուսուցչի վարքի միայն լավ օրինակն առավել օգուտ է աշակերտին, քան բազում դասերն առանց լավ օրինակի:

Եթե մանուկները լավ իմանային, թե ինչ է մարմնի սնունդը և ինչ՝ հոգունը, ուսուցիչներին կկոչեին լավ հայր, իսկ ծնողներին միայն հայր, որովհետև ծնողները կերակրելով սնուցում են մարմինները, մինչդեռ ուսուցիչներն՝ իմաստությամբ ու առաքինությամբ՝ հոգիները:

Լավն է այն ուսուցիչը, ում չի գերազանցում աշակերտը:

*Լեոնարդո Դա Վինչի*

Ամենամեծ գովեստն ուսուցչի համար այն է, երբ գովում են իր աշակերտին:

*Շառլոտ Բրոնտե*

Եթե ուսուցիչը սիրում է իր աշխատանքը, նա լավ ուսուցիչ կլինի: Եթե ուսուցիչը սիրում է աշակերտին, ապա նա ավելի լավ ուսուցիչ կլինի, քան նա, ով կարդացել է բոլոր գրքերը, բայց չի սիրում իր աշակերտին:Եթե ուսուցիչը սիրում է և իր աշխատանքը, և իր աշակերտին, նա կլինի կատարյալ ուսուցիչ:

*Լև Տոլստոյ*



*Նաիրա ՍԻՄՈՆՅԱՆ*

***

Երբ դու կաս, երբ դու կաս ծառերը վկայում,
Եվ օդը գուժում է ապրելուս մասին,
Բառը կապտացուլք իր ադամանդում
Վճիթ է պահում կանչը իմ սրտի:

Աշուն ու ձմեռ մի եղանակված
Ձուլվում են գարնան զմրուխտյա բռվում,
Վեր են խոյանում ցնորքից մաձվան
Կենաց հրացոլք ծնունդը տոնում:

Օրը շքեղ է բացվում, բարձրագոչ,
Կյանքը հրաշք է, կերտվածք անթերի,
Խմում եմ մեղքի բաժակները ողջ,
Մեղապարտ սիրուս թող Տերը խաչի:

Երբ դու կաս, մարմինս անկշիռ, թեթև է,
Պարու՛մ եմ այդժամ ցավի ծովերին,
Ղազարոսամահն արդեն անտև է
Սիրուս հրովարտակը եղել է ապրի՛ր:

***

Գարուն, թե մի օր գաս
ու ինձ չգտնես,
և պատուհանիս զեփյուռը մեղմիկ
վարսս որոնի սիրելու համար,
ասա՝ գնացի այն հեռուները,
ուր մայրամուտի բոցեղ գույները
լուռ ծրարել են
լինելությանս
լուսե խորհուրդը,
իսկ սե՛րս՝ հազա՛ր շուրթ է համբուրում՝
հասու լինելու
մի ճշմարտության...

***

Ողջույն անգինս: Աշուն է հիմա,
Սիբիրի աշունը՝ գրկում ձների,
Կյանքի գեղաբեմ թատրոնում եղա,
Եվ տեր խաղացի, և, ապա՝ գերի:
Ջուր ես հայացքդ հարցերով թերթում,
Նախկնաց շիրմի պես ես էլ եմ անբառ,
Այս ամբողջից լոկ քո գիրկն եմ հիշում,
Համբույրդ շուրթիս՝ դաջված ոսկետառ:
Ողջ առեղծվածից գլուխ չեմ հանում,
Ո՞վ է կարգել ինձ պահապան ինչի՞...
Այս ամբողջից լոկ քո գիրկն եմ հիշում,
Կավեղ շուրթերդ իմ ադամորդի...

***

Ետ դառնամ, հոսեմ ակունքներս ի վար,
Հասնեմ խոհերիս ներծնունդ,
Բառը կարկատեմ խոյանքիս վրա,
Գտնեմ մոլորումիս մարմինը քաղցրաբույր:

Կույր աղոթողի արցունքի նման
Մաքրեմ խռովքս հավատափեշին,
Աղբյուրի նման իմ մթից պոկվեմ
Ու ցայտեմ լույսի ափերով կրկին:

# Չերկաշին Պավել Ռուդոլֆի



Ծնվել է 1973 թվականի սեպտեմբերի 28-ին, Տյումենի տարածաշրջանի Յամալա-Նենեցական ինքնավար մարզի Մուժի գյուղում: Բարձրագույն կրթությունը ստացել է Տյումենի պետական համալսարանի բանասիրական ֆակուլտետում: Առաջին անգամ տպագրվել է տասնվեց տարեկան հասակում:

2000 թվականից Ռուսաստանի լրագրողների միության անդամ է: 2003 թվականից Ռուսաստանի գրողների միության անդամ: Համառուսաստանյան «Վահան և խոսք» մրցույթի մրցանակակիր է (2003): Ռուսական համացանցային գրական «Սիրո մասին» մրցույթի դափներկիր «Պոեզիա» անվանակարգում (2005): Տարածաշրջանային «Տարվա գիրք» VI մրցույթի մրցանակակիր է՝ «Հոգու» գրքի և «Որսորդական արահետներով» աուդիոգրքի համար (2012): Ուրալյան դաշնային շրջանի գրական մրցականի դափնեկիր է՝ բանաստեղծությունների «Հոգու» ժողովածուի համար (2012): Դ. Ն. Մամինա-Սիբիրյակի անվան համառուսաստանյան գրական մրցանակի դափնեկիր է (2013): «Երիտասարդ Պետերբուրգ» գրական մրցանակի դափնեկիր է: (2013): Յուգրայի նահանգապետի մրցանակի դափնեկիր գրական շրջանում «Արձակ» անվանակարգում (2013):

Հեղինակ է արձակ և չափածո տասնյոթ գրքերի: Նրա ստեղծագործության առանձին հատվածներ տեղ են գտել 9-11 դասարանների ուսումնական քրեստոմատիաներում, «Յուգրայի ժամանակակից գրականություն» գրքում, Ռուսաստանի գրողների միության տյումենյան գրական կազմակերպության «Տյումենյան շարով...» անթոլոգիայում, քառահատոր «Յամալյան գրականության անթոլոգիայում» և «Ռուսաստանի բանաստեղծներ» հանրագիտարանում:

1999 թվականի գարնանից ապրում և աշխատում է Խանտի-Մանսիսկում:

Պավել Չերկաշինին հայերեն է թարգմանել Նաիրա Սիմոնյանը:

***

На пустыре, где выше плеч крапива
И путами вьюнка стреноженный бурьян,
Глотаю жадно грёз хмельное пиво
И беспричинно плачу, будто в стельку пьян.
Тоска моя почти всегда слезлива,
Наверное, таков души моей изъян,
Но он же лекарь: пусть неторопливо, –
Затягивает шрамы злых житейских ран.

***

Доброта не в моде ныне.
Совестятся, что ль, её?
Реже думает о сыне
Мать, заморское бельё
Продающая на рынке.
Да и он не пишет ей.
Дед глядит с фотокартинки
Огорчённо на детей.
Очерствели наши души.
Если завтра на заре
И любовь очаг потушит,
Зябко станет на земле.

***

Грядущим жить? – Обман! Обман!
Я был певцом мечты.
Но вот разбился талисман
Той призрачной четы.

Свободен я от грёз и снов,
Но выиграл ли я?
Что в настоящем? – Звон оков
И в рубище земля.

***

Волнующий осколок лета:
Луга послушные ветрам,
Заря до самого рассвета –
Сестра космическим кострам.

Шептанье трав, вуаль тумана
По-над рекою, неба синь.
Я словно в сказке без обмана,
Пленённый кротостью осин.

Нагая тишь меня балует,
И лишь далече за селом
В тайге кукушечка кукует,
Поёт извечный свой псалом.

***

Ամայությունում, ուր եղինջներն են փարթամ,
Եվ ագուցվել են պատատուկ ու մոլախոտ,
Ես կոնծում եմ անուրջների ոգելիցն արբեցման,
Եվ անառիթ լալիս եմ՝ հանց թունդ գինեմոլ:
Թախիծս գրեթե միշտ է լինում լալկան,
Հոգուս թերությունն այդպիսին է երևի,
Բայց նա բժիշկ է, թող կամաց-կամաց
Չար կենաց վերքերն իմ ամոքի:

***

Բարությունը չէ հիմա մոդայում:
Ինչ՞ է, խղճու՞մ են նրան,
Որդու համար հազվադեպ է մտահոգվում
Մայրը, ներքնազգեստ արտերկրյա
Վաճառող շուկայում:
Ոչ էլ գրում է նրան որդին:
Պապն հիասթափ է նայում
Լուսանկարից զավակներին:
Մեր հոգիներն են քարացել:
Եթե վաղը արշալույսին
Սերն էլ իր կրակը մարի,
Ցուրտը կտիրի աշխարհին:

***

Գալիքով ապրե՞լ – խաբկանք է, խաբկանք,
Ես երգիչն էի երազների:
Ահա համայիլն է փշրվել
Այն տեսլային զույգի:

Ես ազատվե՞լ եմ անուրջ-երազներից,
Բայց շահե՞լ եմ արդյոք,
Ներկայում ի՞նչն է: Զնգոց շղթաների,
Եվ վիրամաշ հող:

***

Հուզիչ օրեր են ամռան,
Հնազանդ են մարգերը սյուքերին,
Այգը մինչև լուսաբաց
Քույր է տիեզերական խարույկներին:

Խոտերի շրշյուն, կապույտ երկնի,
Շղարշ մեգերի՝ գետը պարուրած:
Ես հեքիաթում եմ, առանց խաբկանքի,
Բարդիների հեզությամբ գերված:

Կուսական լռությունն է ինձ փայփայում
Միայն հեռու՝ գյուղից անդին,
Կկուն է կանչում տայգայում,
Երգելով իր սաղմոսը հին:

***

В позолоту мерцающих звёзд,
В молоко полнолунной ночи,
До созвездий – космических гнёзд –
Я хочу улететь. Замолчи!

Не держи меня. Знаю, что любишь.
Верю в искренность ласки твоей.
Но ведь ты окрылённого любишь,
Я – крылатых небесных кровей.

Отпусти! Белоснежные крылья
Снова просятся в дальний полёт.
Не грусти, о тебе не забыл я,
О тебе моё сердце поёт.

Я поведаю братьям пернатым,
Что тобою так ярко горю.
Никогда не бывал я богатым,
Но я крылья тебе подарю!

***

Ոսկեզօծում փայլող աստղերի,
Կաթնագույնի մեջ գիշերվա լիալուսնի,
Մինչ համաստեղությունները՝ տիեզերաբների,
Ես թռչել եմ ուզում: Լռի՛ր:

Ինձ մի՛ բռնիր: Գիտեմ, սիրում ես,
Հավատում եմ անկեղծ քո փայփայանքին:
Բայց ախր թևավորին ես դու սիրում,
Նրանց երկնազարմից եմ ես սերում:

Բա՛ց թող: Ձյունաճերմակ թևերը
Նորեն հեռավոր թռիչք են հայցում:
Մի տխրիր, ես քեզ չեմ մոռացել,
Իմ սիրտը քո մասին է երգում:
Փետրավորներիս քո մասին կպատմեմ,
Որ քեզանով եմ պայծառ այրվում:
Ես երբեք հարուստ չեմ եղել,
Բայց քեզ թևեր եմ նվիրում:

# «Մեզ մոտ ամեն ինչ կառուցված է ձեռքի կառավարման սկզբունքով»

Հայտնի գործարար Սամվել Կարապետյանը հարցազրույց է տվել ռուսական РБК ամսագրին, որը թարգմանաբար ներկայացնում ենք ստորև

«Տաշիր» խմբի սեփականատեր **Սամվել Կարապետյանը՝** ճգնաժամի ժամանակ բիզնեսի նկատմամբ վերահսկողությունը պահպանելու, Մոսկվայի քաղաքապետ Սերգեյ Սոբյանինի հետ ունեցած հարաբերությունների և Mirax Group-ի հիմնադիր Սերգեյ Պոլոնսկու հետ չհաջողված գործընկերության մասին

Սամվել Կարապետյանը քչերից է շինարարության և անշարժ գույքի կառավարման բիզնեսում, ում հաջողվեց ճգնաժամի տարիներին չվաճառել բիզնեսի իր մասնաբաժինը կամ դրանք գրավադնել բանկերում: Ավելին, համընդհանուր անկման շրջանում գործարարին հաջողվեց կրկնապատկել իր բիզնեսի ծավալները և զբաղվել նոր ծրագրերով՝ տարածքների վարձակալության հանձնում, հասարակական սնունդ և էներգետիկա: 2006 թ. համեմատ՝ 2012 թ. «Տաշիրի» շրջանառության ծավալներն աճել են չորս անգամ՝ 22 միլիարդ ռուբլուց հասնելով 90,2 միլիարդի: Եվ այդ ամբողջ ընթացքում Կարապետյանը, հետևելով «Փողը սիրում է լռություն» սկզբունքին, չէր պատմում, թե ինչպես է կառուցում իր կայսրությունը: Սա նրա առաջին հարցազրույցն է 10 տարվա ընթացքում, որում նա բացահայտել է հաջողության բանաձևը և պատմել ապագայի ծրագրերի մասին:



### «Քաղաքականությունն իմը չէ»

***– Ինստիտուտն ավարտելուց անմիջապես հետո Դուք դարձաք էմալապատ սպասքի գործարանի տնօրեն: Ինչպե՞ս Ձեզ հաջողվեց ուսանողական նստարանից միանգամից հայտնվել ղեկավար պաշտոնում:***

– Անկեղծ ասած, միանգամից չեմ հայտնվել: Ինստիտուտից հետո ես սկզբում աշխատել եմ գործարանի գլխավոր տեխնոլոգ, հետո միայն՝ տնօրեն:

***– Գլխավոր տեխնոլոգը նույնպես ղեկավար պաշտոն է, և սովորաբար երեկվա շրջանավարտին չեն նշանակում:***

– Այո, այդպիսի բան տեղի է ունենում շատ հազվադեպ: Բայց իմ դեպքի համար կա բացատրություն: Ամեն ինչ տեղի է ունեցել Հայաստանում, իմ հարազատ Կալինինոյում, որտեղ բոլորը գիտեն իրար: Հայրս դպրոցի տնօրեն էր, մայրս՝ անգլերենի ուսուցչուհի: Մեր ընտանիքը լավ համբավ ուներ, այնպես որ, իմ ազնվությունը և գործարանը կառավարելու հմտությունները կասկածի տակ չդրվեցին: Բացի այդ, 20 տարեկանում, երբ ավարտեցի ինստիտուտը, բավական ակտիվ և նպատակասլաց երիտասարդ էի, պատրաստ շատ աշխատել և ամեն ինչ սովորել: Ինձ թվում է, որ գործարանի տնօրենը՝ հրավիրելով ինձ աշխատանքի, լավ գիտեր, որ ճիշտ ընտրություն է կատարում:

***– Երեք տարի անց Դուք ստեղծեցիք «Զենիթ» կոոպերատիվը՝ շարունակելով աշխատել գործարանում: Մանրամասն պատմեք այդ ժամանակաշրջանի մասին:***

– Ինստիտուտն ավարտելուց երեք տարի անց՝ 1989 թ., ես ստեղծեցի իմ առաջին գործը՝ «Զենիթ» բազմապրոֆիլ կոոպերատիվը, որը զբաղված էր ռետինե և մետաղական իրերի, ինչպես նաև հագուստի արտադրությամբ: Ավելի ուշ գնեցի էմալապատ սպասքի գործարանը, որի ղեկավարն էի, և այն վերափոխեցի կոոպերատիվի: Հասկանում էի, որ այդպիսով ստեղծում եմ ավելի ժամանակակից հարթակ, որը կարող է զարգանալ փոփոխվող տնտեսության պայմաններում: Դրան զուգահեռ՝ ցանկանում էի գործել ինքնուրույն: Միշտ առաջնորդվում եմ այն սկզբունքով, որ ավելի լավ է ձեռք բերել հարցանք՝ զբաղեցնելով առաջնորդի դիրք, քան հետևել այլոց հրահանգներին:

***– Ի՞նչ խոչընդոտների եք հանդիպել այդ ժամանակ:***

– Կարող է զարմանալի թվալ, բայց այն ժամանակ ես չէի տեսնում դժվարություններ կամ խոչընդոտներ, որոնք հնարավոր չէր հաղթահարել: Ես սկսել եմ իմ գործը՝ հավաքելով ընկերներիս, մենք քննարկել ենք գաղափարը, գործողությունների ծրագիրը և սկսել ենք աշխատել. ամեն ինչ պարզ էր և առանց որևէ դժվարությունների:

***– Ձեր հարազատ եղբայրը՝ Կարեն Կարապետյանը, մինչև 2011 թ. Հայաստանի նախագահի աշխատակազմի ղեկավարն էր, իսկ այժմ պատգամավոր է: Ինչո՞ւ նրա օրինակով՝ Դուք էլ չզբաղվեցիք քաղաքականությամբ:***

– Դա ինձ հետաքրքիր չէ, դա իմը չէ:

***– Իսկ ինչո՞ւ որոշեցիք տեղափոխվել Ռուսաստան:***

– Ես ունեի ծրագիր. եկա-հաստատվեցի-հաղթեցի (ծիծաղում է.- խմբ.): Ռուսաստանում իմ առաջին հանգրվանը Լիպեցկն էր:

⊃19

18⊃

Այդ քաղաքն ընտրեցի, քանի որ շրջանը և մարդիկ ինձ շատ լավ ծանոթ էին. մեր կոոպերատիվն այդ ժամանակ ակտիվ համագործակցում էր Նովոլիպեցկի մետալուրգիական գործարանի հետ: Մենք նրանցից մետաղ էինք գնում, իսկ նրանց վաճառում էինք հատուկ հանդերձանք: Լիպեցկից տեղափոխվեցի Մոսկվա, իսկ ավելի ուշ հաստատվեցի Կալուգայում, որտեղ բավական թվով ընկերներ ունեի: Բացի այդ, այնտեղ էին ապրում իմ զարմիկները:

***– Կալուգայում Ձեր բիզնես պորտֆելը բավական դիվերսիֆիկացված էր. դեղագործություն, կաթի գործարան, շինարարություն, հասարակական սնունդ: Ի՞նչ սկզբունքով էիք ընտրում ակտիվները և ի՞նչ միջոցներով էիք գնում:***

– Առաջին գումարը ես վաստակել եմ դեռ Հայաստանում: Դա ինձ հնարավորություն տվեց ապրել բարեկեցիկ կյանքով, դրանով ես գնեցի Ռուսաստանի իմ առաջին ակտիվները: Հետո բիզնեսը սկսեց զարգանալ նոր նախագծերից եկող եկամուտներով, որոնցով ես զբաղվեցի Լիպեցկում և Կալուգայում: Հենց այդ ժամանակ ձևակերպեցի «Տաշիրի» աշխատանքի հիմնական սխեման, որը գործում է առ այսօր. մենք միշտ փնտրում ենք ակտիվներ, բայց պատրաստ ենք ներդնել միայն ամենահետաքրքիր և ամենաեկամտաբեր ակտիվներում: Այդ որոնումների արդյունքում այն ժամանակ մենք հավաքեցինք շուկայի լավագույն առաջարկները:

***– Ամեն ինչ մինչև այժմ մնացե՞լ է:***

– Այո: Ձեր կողմից թվարկվածներից այսօր մեզ չի պատկանում միայն Կալուգայի դեղագործարանը: Բայց երբ մենք այն գնեցինք, արդեն չէր աշխատում, և այդ պատճառով մեզ բացառապես հետաքրքրում էր այն տարածքը, որտեղ այն գտնվում էր: Գործարանի դիրքն առավելապես նպաստավոր էր մեր առաջին առևտրի կենտրոնի շինարարության համար:

***– Դուք աշխատում եք ամբողջ երկրում՝ Հեռավոր Հյուսիսից՝ մինչև Ռուսաստանի հարավային շրջաններ: Ո՞ր շրջաններում է առավել դժվար:***

– Դժվար է աշխատել աղքատ շրջաններում: Հենց հիմա մենք փորձում ենք բիզնես ստեղծել դրանցից մեկում: Ինձ թվում է՝ այդ տարածքների տնտեսական անհաջողությունններն անմիջականորեն կապված են նրանց կառավարման թիմերի անարդյունավետության հետ, որոնք, փոխանակ խորտակվողին փրկելու, հավելյալ խոչընդոտներ են ստեղծում բիզնեսի համար: Զարմանալի է, բայց այդ մարդիկ չեն հասկանում, որ գործարարների առջև վառված կանաչ լույսը կարող է արագացուցչի դեր կատարել տարածաշրջանի աճի համար: Ես համոզված եմ, որ մեր ընկերությունն իրենց ավելի շատ է պետք, քան իրենք՝ մեզ:

**Հենվելով հարազատների և Սփյուռքի վրա**

***– Ինչպե՞ս ճգնաժամն ազդեց «Տաշիրի» վրա:***

– Դրական: Մենք կոփված ենք. մենք անցել ենք երկու ճգնաժամի միջով՝ 1998 թ. և 2008 թ.: Երկու դեպքում էլ կարողացանք օգտվել ստեղծված հնարավորություններից:

***– Հետճգնաժամային տարիներին «Տաշիրը» դարձավ անշարժ գույքի կառավարման շուկայի առաջատարներից: Ոմանք ասում են, որ հաջողության գաղտնիքը սփյուռքի վրա հենվելն է և Ձեր անմիջական մասնակցությունը բոլոր գործընթացներին, մյուսները՝ «Գազպրոմի» հետ մտերմությունը և սև օրվա համար կատարված խնայողությունները: Այսպիսով, ո՞րն է գաղտնիքը:***

– Ինչ-որ իմաստով ճիշտ են բոլոր պնդումները: Բայց գերագնահատել «Գազպրոմի» դերը «Տաշիրի» ճակատագրում՝ ճիշտ չէ: Զգալի ազդեցություն ունեցել է ամեն ինչը. և մենեջերների ամենօրյա աշխատանքը, և սփյուռքի վրա հենվելը, և ճիշտ բիզնեսռազմավարությունը, և մեր կողմից ընտրված զարգացման առաջանցիկ տեմպը, և ցանկացած խնդրի լուծման հարցում մանրակրկիտ մոտեցումը. նախագծի ընտրությունից՝ մինչև ներդրումների բաշխում:

***– Երբ Դուք տեղափոխվեցիք Կալուգա, քչերից մեկն էիք, ում հաջողվեց լավ հարաբերություններ հաստատել «Գազպրոմի» հետ...***

- Այո, մենք նախկինում էլ ենք շփումներ ունեցել «Գազպրոմի» հետ և այժմ էլ ունենք: Բայց դա ամենևին չի նշանակում, որ «Գազպրոմը» մեր եկամուտների կառուցվածքում զբաղեցնում է գերիշխող դիրք, կամ «Տաշիրի» ամբողջ բիզնեսը ենթարկվում է գազային մոնոպոլիստի շահերին: Ինչ-որ պահի «Գազպրոմի» հետ աշխատանքներից եկող գումարը կազմում էր մեր եկամտի զգալի մասը, բայց այժմ այդ մասն ավելի ու ավելի փոքր է: Ներկայումս գազային մոնոպոլիստի հետ պայմանագրերը չեն գերազանցում մեր շրջանառության 3 տոկոսը:

***– Ինչպիսի՞ խնայողություններով Դուք դիմավորեցիք ճգնաժամը:***

– Ճգնաժամին մենք մոտեցանք լավ համբավով, և փոխառու միջոցների քանակը կրիտիկական չէր: Դա թույլ տվեց «Տաշիրին» հանգիստ զգալ: Առավել ևս, որ բանկերի հետաքրքրությունը մեր նկատմամբ շատ բարձր էր: Երբ ուրիշ ընկերություններ վարկեր էին վերցնում 19-20 տոկոսով, մենք Ռեյֆֆայզենբանկից վարկ ստացանք 6 տոկոսով:

***– Ձեր պահուստային ֆոնդում շա՞տ գումար կա:***

– Ասեմ այսպես. դրանք լիովին բավարար են ագրեսիվ զարգացման համար:

***– Ինչո՞ւ մինչև ճգնաճամը Դուք չէիք վերցրել այնքան վարկեր, որքան մրցակիցները:***

– Դա իմ բնավորությունն է՝ պարտք չլինել: Եվ դա իմ սկզբունքային դիրքորոշումն է: Մենք կարող էինք բոլոր միջոցներն ուղղել ընդլայնմանը, բայց մենք չենք շտապում՝ հանգիստ և աստիճանաբար շարժվում ենք առաջ:

***– Իսկ ինչո՞ւ եք մտնում բոլոր գործերի մանրամասնությունների մեջ: Գուցե դա ճիշտ չէ, որ, օրինակ, Դուք մասնակցում եք առևտրային կենտրոնների ներքին հարդարման աշխատանքներին:***

– Ոչ միայն ներգրավված եմ ինտերիերի նախագծմանը, ես ինքս եմ հորինում դրանք: Որևէ մեկին մոտ չեմ թողնում այդ գործընթացին: Դրանից բավարարվածություն եմ ստանում: Աշխատում եմ առավելագույնս ներթափանցել ընթացիկ հարցերի մեջ յուրաքանչյուր հարթությունում և բիզնեսի յուրաքանչյուր ճյուղում: Ինձ համար կարևոր է վերահսկել ընկերության ամբողջ գործունեությունը և հասկանալ, թե ինչպես է աշխատում համակարգը:

***– Դուք 200-ից ավելի ընկերություններ ունեք: Եթե ներթափանցեք բոլորի...***

– Մեզ մոտ ամեն ինչ կառուցված է ձեռքի կառավարման սկզբունքով: Եվ եթե ես չմասնակցեմ բոլոր գործընթացներին, ապա «Տաշիր» խմբի մեջ կմտներ ոչ թե 200 ընկերություն, այլ անհամեմատ ավելի քիչ:

***– Ճի՞շտ է, որ նախքան ինչ-որ գործարքի վերաբերյալ որոշում կայացնելը՝ Դուք խորհրդակցում եք հայկական սփյուռքի տեղի ներկայացուցիչների հետ:***

– Այո, դա իսկապես այդպես է: Սկզբունքներից մեկը, որի վրա կառուցված է բիզնեսի վարման իմ մոտեցումը՝ հենվել միայն նրանց վրա, ում ես կարող եմ լիովին վստահել:

***– Ազգականների հետ աշխատանքը Ձեր բնորոշ գիծն է: Շատ գործարարներ դա չեն սիրում:***

– Իսկ ես սիրում եմ (ծիծաղում է.- խմբ.): Չեմ կարծում, որ բիզնեսի վարման ընտանեկան սկզբունքներն անպայման դատապարտված են ձախողման: 20 տարվա ընթացքում իմ բազմաթիվ ազգականներից ոչ ոք ինձ չի հիասթափեցրել: Եվ չի եղել ոչ մի դեպք, երբ ինձ հիասթափեցրած լինեն հայերը:

**«Մոսկվայում իրավիճակը փոխվել է»**

***– Ասում են, որ 2008 թ. հետո «Տաշիրը» հեղեղված էր գնման առաջարկներով նրանց կողմից, ովքեր գտնվում էին կործանման եզրին: Շա՞տ ակտիվներ են ավելացել:***

– Ճիշտ է, հեղեղված էր: Առաջարկներ ստացվում են նաև այժմ: Մենք դրանք ուշադիր ուսումնասիրում ենք և բավական արագ որոշում ենք կայացնում գնման մասին: Չեմ ուզում գովազդել որոշ խոշոր գործարքներ, որովհետև դրանք դեռ չեն ավարտվել, բայց կասեմ, որ առաջին եռամսյակում բոլորը կտեսնեն «Տաշիրը»:

***– Ինչո՞ւ ճգնաժամի ժամանակ հրաժարվեցիք աշխատել Սերգեյ Պոլոնսկու հետ, բայց գնեցիք շատ օբյեկտներ, այդ թվում՝ Սերգեյ Գլյադելկինի՝ Մոսկվայի հարավ-արևմուտքում գտնվող «Գազօյլ-սիթի» բնակելի համալիրը:***

– Բանն այն է, որ «Տաշիրը» և Mirax Group-ն ութ կետից բաղկացած համաձայնագիր էին ստորագրել: Պոլոնսկու ընկերությունը չկատարեց դրանցից ոչ մեկը: Բնական է, որ այդ իրավիճակում համագործակցության մասին խոսք լինել չէր կարող: Իսկ Սերգեյ Գլյադելկինի նախագծերն առավել հետաքրքիր էին և ավելի լավ էին ձևակերպված իրավական տեսակետից:

***– Երբ Դուք կրճատում էիք ծախսերը և զբաղվում էիք օպտիմալացմամբ, առաջիններից էիք, որ սկսեցիք նոր նախագծեր. Comedy Cafe ռեստորանների ցանցը, «FreshMarket» մթերային խանութների ցանցը, տան համար նախատեսված ապրանքների «Наш дом» ցան-***

⊃20

19Ը

***ցը, «Cinema Star» կինոթատրոնների ցանցը, և այլն: Ո՞ւմ գաղափարներն էին դրանք, որտեղի՞ց էիք վերցնում այդ միջոցները:***

– Այո, ճգնաժամի ժամանակ մենք որոշեցինք չդանդաղեցնել «Տաշիրի» զարգացման տեմպերը: Ինչ վերաբերում է գաղափարներին, ապա բոլոր նոր գաղափարները գեներացնում է մեր թիմը: Մենք մանրակրկիտ կշռում ենք բոլոր ռիսկերը և մշակում ենք զարգացման ռազմավարությունը: Եվ եթե թույլ ենք տալիս սխալներ, դրանք շատ աննշան են, և, ընդհանուր առմամբ, ոչնչի վրա չեն ազդում, որովհետև մենք այդտեղ ուղղում ենք ոչ այնքան մեծ գումարներ:

***– Երբ Մոսկվայի ղեկավարությունը փոխվեց, կառուցապատողների մեծ մասի մոտ խնդիրներ առաջացան, որովհետև նրանց նախագծերը «քնում» էին Հողային-քաղաքաշինական հանձնաժողովում: «Տաշիրի» ոչ մի օբյեկտի հետ նման բան չկատարվեց: Դա կապվա՞ծ է նրա հետ, որ Դուք Սերգեյ Սոբյանինի հետ ծանոթ էիք դեռևս այն ժամանակներից, երբ նա գլխավորում էր Տյումենի նահանգը:***

– Անկեղծ ասած, Սերգեյ Սոբյանինի հետ ես նախկինում ծանոթ չեմ եղել: Ամեն ինչ պարզ է. «Տաշիր» խումբն ընդունեց նոր թիմի խաղի կանոնները, որը կայանում է շուկայի բոլոր մասնակիցների համար հավասար պայմանների ապահովման մեջ, առանց բացառությունների: Անձամբ ես դրանում խնդիրներ չեմ տեսնում: Ավելի ճիշտ՝ հակառակը, որովհետև իշխանությունների հետ հարաբերությունների մեխանիզմը դարձել է ավելի արդյունավետ և թափանցիկ:

***– Կարելի՞ է եզրակացնել, որ մյուսները շարունակում էին պնդել բացառիկ պայմանների վրա:***

– Գիտեք, նոր թիմը շատ ուշադիր է իրական ներդրողների վրա, և ինձ թվում է, որ գործնականում վերացրել է շուկայի բոլոր սպեկուլյացիաները: Նախկինում կային ընկերություններ, որոնք համաձայնեցնում էին նախագծեր, ստանում էին թույլտվություններ, և հետո փնտրում էին գնորդներ իրենց օբյեկտների համար: Արդյունքում՝ շատ օբյեկտներ մնացին անավարտ: Երեք տարի առաջ իրավիճակը փոխվեց, և նոր իրականության մեջ աշխատում են միայն նրանք, ովքեր իսկապես կարող են:

***– 2003 թ. Դուք ասում էիք, որ «Տաշիրի» առաջնահերթություններն են՝ շինարարությունը, էներգետիկան և գազային ենթակառուցվածքները: Ինչպե՞ս 10 տարվա ընթացքում փոխվեցին առաջնահերթությունները:***

– Այսօր գլխավոր ուղղությունը կառուցապատումն է, շինարարությունը և ֆինանսական հատվածը: Մենք առաջավոր դիրքեր ենք մղում էներգետիկ և ճարտարագիտական ընկերություններին, զարգացնում ենք ռիելթորական ուղղությունը:

***– Ո՞ր ուղղություններն են առավել շատ եկամուտ ապահովում:***

– Եկամուտների շուրջ 50 տոկոսը գալիս է կառուցապատումից, մնացած 50 տոկոսը շինարարությունն է, էներգետիկան, ֆինանսները և ռիելթորական գործունեությունը:

***– Կա՞ն ընկերություններ, որոնք սուբսիդավորվում են ուրիշների հաշվին:***

– Սկզբնական փուլում՝ համարյա բոլորը: Բնական է, որ երբ մենք ստեղծում ենք նոր բիզնես, ներդնում ենք գումարներ ուրիշ նախագծերից: Հետո դրանք ինքնածախսածածկվում են, իսկ հետո, ընկերությունը պետք է ինքնուրույն լինի: Անշարժ գույքի ոլորտի մեր բոլոր ծրագրերը պետք է ներդրված գումարը հետ բերեն երեք տարում:

***– Երեք տարին շատ խիստ պահանջ է: Հավանաբար լինո՞ւմ են անհաջող ծրագրեր:***

– Անկեղծ ասած՝ ոչ: Չնայած յուրաքանչյուր նախագիծ զարգանում է իր տեմպերով, մենք մինչև այժմ իրականացնում ենք դրանցից յուրաքանչյուրը: Դրա հետ մեկտեղ, երբ մենք դուրս ենք գալիս որևէ ընկերությունից, նշանակում է՝ մեզ առաջարկել են լավագույն պայմանները: Օրինակ՝ մենք ունեինք դեղատների ցանց, որը մենք վաճառեցինք այդ պատճառով:

***– Դուք ունեք այնպիսի նախագիծ, որը վերապահումով կարելի է անվանել ագրարային. Դուք աճեցնում եք վարդեր: Դա հոգո՞ւ համար է:***

– Ոչ այնքան: Դա լավ բիզնես է, ինչպես ամբողջ աշխարհում: Մենք ունենք Ռուսաստանում ամենամեծ տնտեսությունը, որի տարածքը 60 հեկտար է, Պենզայի մարզում, և մենք մտադիր ենք այն ընդլայնել: Մոտ ժամանակներս կհասնենք տարեկան 200 միլիոն հոլանդական վարդ արտադրողականության: Ապագայում պլանավորում ենք աճեցնել կակաչներ և ծաղիկների այլ տեսակներ:

***– Իսկ չե՞ք պատրաստվում զբաղվել ցորեն աճեցնելով կամ անասնապահությամբ:***

– Մենք տարբեր շրջաններում մտնում ենք նման նախագծերի մեջ, եթե այդ մասին մեզ խնդրում են տեղական իշխանությունները: Մասնավորապես, Կալուգայի մարզում զարգացնում ենք երկու կոլտնտեսություն: Մեզ համար դա ոչ պրոֆիլային բիզնես է, բայց դա լավ եկամուտ է ապահովում:

***– Սովորաբար իշխանությունները պարտադրում են մասնակցություն բիզնեսում. խնդրում են կառուցել մանկապարտեզներ, հիվանդանոցներ...***

– Պետք է օգնել իրագործելու այդպիսի ծրագրերը, և մենք դա իրականացնում ենք և՛ Ռուսաստանում, և՛ Հայաստանում: Դա դիտարկում ենք ոչ թե՝ որպես պարտականություն, այլ մեր պատասխանատվությունը հասարակության առաջ:

**«Սոչիից ենք հեռանում վնասներով»**

***– Մի քանի տարի առաջ ասում էիք, որ Մոսկվայի և Ռուսաստանի առևտրի կենտրոնների շուկան ամբողջությամբ հագեցած չէ:***

– Այժմ ես վստահորեն կասեմ նույնը: Մոսկովյան շուկան հագեցած է կիսով չափ: Եվ առաջիկա 10 տարին պահանջարկը կգերազանցի առաջարկը:

***– Շատ ընկերություններ ներդրումներ են կատարում համացանցում, տեխնոլոգիաներում: Դուք նման ընկերություններ դեռ չունեք: Չե՞ք պլանավորում գործունեություն ծավալել այս բնագավառում:***

– Ընդհանուր առմամբ՝ մենք չենք շտապում ներդրումներ կատարել բարձր տեխնոլոգիաների շուկայում: Դրա հետ մեկտեղ՝ մենք ունենք հեռահաղորդակցության ընկերություն, և եթե նրա գործունեության շրջանակներում հաջողվում է օգտագործել բարձր տեխնոլոգիաներ, մենք դա անում ենք: Անկեղծ ասած, ես չգիտեմ ուղղություն, որտեղ մենք ներկայացված չլինենք:

***– Տրանսպորտում: Դոմոդեդովո օդանավակայանը, օրինակ՝ վաճառվում է:***

– Վաճառվում է, բայց այնտեղ գնորդների հերթ է: Կարծում եմ՝ Դոմոդեդովոյում առանց մեզ էլ գլուխ կհանեն: Եվ խնդիրն այն չէ, որ այնտեղ կոշտ մրցակցություն է՝ դրանից մենք չենք վախենում, մենք միշտ պետք բարձր ենք պահում մեր ապրանքանշանը: Դա հնարավոր է այն դեպքում, երբ յուրաքանչյուրը զբաղվում է իր գործով:

***– Կա նաև նանոտեխնոլոգիաների ոլորտը: Ինչ-որ առիթով ասել էիք, որ համակրում եք Անատոլի Չուբայսին...***

– Ես բիզնես եմ կառուցում միայն այնտեղ, որտեղ հասկանում եմ առանձնահատկությունները և բիզնես գործընթացները:

***– Իսկ շատերը մասնակցում են այնտեղ, որտեղ ոչինչ չեն հասկանում:***

– Իհարկե: Բայց ի՞նչ է տալիս նման մոտեցումը: Սկսելով ձեզ հետ խոսակցությունը, մենք ձեզ հետ նշեցինք, որ շատերը ճգնաժամի ժամանակ տուժեցին, իսկ «Տաշիրը» բարելավեց իր ցուցանիշները: Հավանաբար ձախողումների պատճառն այն էր, որ նրանք մինչև վերջ չէին հասկանում ոլորտի առանձնահատկությունները, որի մեջ մտել էին:

***– Շինարարները բողոքում են, որ մեզ մոտ չեն բավարարում ժամանակակից տեխնոլոգիաները, հաստատությունները և մասնագետները:***

– Ես համաձայն եմ նրանց հետ: Տեխնոլոգիաների անբավարարությունը մեծապես արգելակում է ճյուղի զարգացումը և արդյունքում՝ բերում է ռեսուրսների ոչ արդյունավետ օգտագործման: Օրինակ՝ Սոչիի օլիմպիական օբյեկտները, որտեղ մասնագետներից պահանջվում էր ամենաբարձր որակավորում, ոչ մի շինարարական ընկերություն չկարողացավ վաստակել: Սոչիի մեր նախագծերը միակն էին, որոնք մենք իրականացնում ենք վնասով:

***– Իսկ Սոչիում Դուք ի՞նչ եք կառուցում: Որտեղի՞ց վնասները:***

– Մենք մտանք Սոչի նավահանգստի և Առևտրացուցադրական կենտրոնի կառուցման՝ արդեն պատրաստի նախագծի մեջ: Ցավոք, հետագա աշխատանքը ցույց տվեց, որ նախագծերը կազմված էին այն աստիճան անգրագետ, որ իրականացնել դրանք, առանց նախահաշվից դուրս գալու, չափազանց ծանր է:

***– Ձեզ առաջարկե՞լ են Ձեր նախագծերով դուրս գալ արտասահման:***

– Այո, նման առաջարկներ մենք անընդհատ ստանում ենք: Լուծումների հարցում չենք շտապում. սկզբում պետք է պատրաստվել նոր շուկաների յուրացմանը և հաշվարկել ռիսկերը: Չնայած մենք արդեն

Ը21

# Դեպի Երկիր, դեպի Ազատ, Անկախ և Միացյալ Հայաստան

Այսօր բացեցի աչքերս ու վերջապես հասկացա՝ ազատ ծնվեցի, ստրուկ մեռնելու եմ: Ինքնագիտակցությանս պարզեցումից ցնցված լրիվ արթնացա ու խեղդվողի բնազդով փորձեցի կառչելու որևէ բան գտնել: Հայացքս ընկավ պատուհանին՝ մութ էր, լույս չկար: Դեռ գիշեր էր: Ինչ անեմ գիշերով, ինչու գիշերով: Գուցե լույսով իրերի հերթականությունն այլ կերպ դասավորվեր՝ ստրուկ ծնվեցի, ազատ մեռնելու եմ: Իսկ, ասենք, եթե ցերեկով այդ նույն հերթականությունը հայտնաբերեի, հասկանայի, ինչ պիտի անեի: Ազատ-ստրուկ, ստրուկ-ազատ: Երկու բառերի միջինքը գծիկ է, չէ, գծիկ չի, մեխ է, որն ինձ գամել է անորոշությանը, զրկել...

Ինչից է զրկել՝ անծրագիր ապրելուց: Ի սեր Աստծո, խոսքը կենսաբանական կեցության մասին չէ՝ շնչել, ուտել, ծնել, մեռնել: Ապրելն ու մեռնելը դատարկ բառեր չեն, իրականություն են: Չգիտեմ, որն է դաժան: Շուտով կմտածեմ դրա մասին:

Բնապահպանության նախարար էլ ունենք, սակայն ձմեռը չի ավարտվում: Կենսունակության գերածախս տված իմ դիմադրողականությունը շփոթված մնացել է անհուսության ու հույսի խճճված բավիղներում: Արհեստական գրգիռները, որ ներարկվում են մամլո քրմերի միջոցով, մի կերպ օգնում են դիմանալ:

Մշակույթ, մարդու իրավունքի պաշտպան, Ջուղայի խաչքարերի կոտորած, ազատագրված տարածք, արնահոսող Սևան, գազի հետ երկինք ճախրող ժողովուրդ ինձ բերում, հասցնում են «Լինել, թե չլինել» երկընտրանքին, որը համ ես էի մոռացել, համ էլ երևի թե շեքսպիրամոլ ազգս: Լավ է, թե վատ այս մոռացկոտությունը: Ոնց որ թե լավ է՝ իր քաղաքական գործիչների բոլուկին, իր մտավորականության երիցս առհամարված ընտրանուն հղում է անում ազգս, թող նրանք մտածեն, ինքը դատարկ բաների ժամանակ չունի, ինքը ապրում է:

Ապրում է՝ լավ, թե վատ: Հարյուր հարցվածներից մի փոքր հատվածի կարծիքով՝ լավ, Արցախի պրոբլեմը չի ազդում իրենց կյանքի գործընթացի վրա: Մեծամասնության կարծիքով վատ է ապրում, և մեղավորը Արցախն է (հեռուստաընկերություններից մեկի հարցախույզի արդյունք): Բա ոնց, Արցախը մեղավոր է, ասենք, այսքան ծառ կտրվեց, հսկայական անտառաշերտեր վերացան երկրում, հողը սողանք է տալիս, հողի սողանքի նման ժողովուրդը հեռանում է, ձյան ծանրությունից տանիքները փլուզվում են (իզուր չեն ասում «տունդ գլխիդ փուլ գա»), փողոցներն անանցանելի են աղբի առատությունից, կոռուպցիան ու կաշառակերությունը կենսակերպ է, թըռչնագրիպը շուտով կգա, հավատն ու արժանապատվությունը զրոյական է, ռաբիսը խեղդում է...

Իսկ մյուս կողմում Մուհամեդի հետևորդները ոտքի են կանգնել ու չեն նստում: Տարիներ առաջ մի ողորմելի վարչապետ, ոմս դանիացի, ներողություն խնդրեց այդ հետևորդներից: Փառք ու պատիվ նրանց ու նրանց Մարգարեին:

Իսկ մեր կողմերում, մեր երազների Եվրոպայում, եթե շարունակենք այսպես, հստակ չմիանանք որպես պաշտպան, սահմանապահ (միշտ էլ պահպանել ենք), Էյֆելյանը կդառնա աշխարհի ամենանշանավոր մինարեթը: Անհավատ ու անաստված Եվրոպա: Նրա համար Օմբուդսմենը փոխարինել է Քրիստոսին, բացարձակ արժեք է: Ախ այդ մարդու իրավունքը՝ մերօրյա քաղաքակրթական գալակտիկայի միջուկը՝ պստլիկ սև խոռոչ, գերծանր նյութ, որ «ես» է կոչվում ու կլանում է իր պարույրի մեջ ընկած ամեն ինչ՝ ազգային արժանապատվություն, ժողովրդի իրավունք, պատմական ճշմարտություն, արդարություն, հաղթանակ: Վերջապես, որպես հստակ, որոշակի սեռի պատկանող անձ: Անձից դուրս է պրծնում «ես»-ը: Անդեմ, տձև մի զանգված, որի հետ խաղում են Տիբեթի մեծերը:

Մյուս կողմում Մաքսային Միությունն է՝ Արմագեդոնի, չբացահայտված թռչող օբյեկտի նման մի բան, որ կա, բայց մենք չենք տեսել, կամ էլ տեսել ենք հնգաթև աստղի ճաճանչներով:

Իսկ հանգիստ ապրում էինք: Ամենակարևորը՝ հանգիստ: Արցախը քչփորեց այս ողջ կեղտը ու արևերես հանեց: Անծպտուն վայելում էինք կյանքը մեր խռուշչովկաներում, մեր հերթագրումներով՝ բնակարանից մինչև սառնարան ու ավտոմեքենա, մեր կոլխոզ-սովխոզով, մեր ԿԳԲ-ով ու զառամյալ առաջնորդներով, մեր մենմիակ կենտրոնով՝ դամբարանից մինչև Կրեմլ ընկած, դեպի տաճար տանող ճանապարհով, համաշխարհայնացման մեր արևելյան միաբևեռ...-ով, մեր բամբասանք-անեկդոտներով, որ այսօր «աստկոսե» են կոչվում, շշուկով ասվող ճըշմարտություններով և երկարատև, բուռն ծափահարություններով: Այն ժամանակ լեզուն ոսկոր ուներ, կարելի էր նրան ջարդել, ուստի ատամներիս տակ էինք պահում, որ չջարդեն:

Հիմա անոսկոր լեզու է, ատամ էլ չունենք: Խոսում ենք ու խոսում, մեծամասնությունն ասում է, Արցախն է մեղավոր: Հարցախույզի արդյունք է, փաստ, որն ամփոփելով, գոհունակությամբ հայտարարում են. «Ղարաբաղյան հիմնահարցի պատճառով է, որ Հայաստանը տնտեսական առաջընթաց չունի, վատ ենք ապրում»: Բա:

Ինչ-որ հիշողություն մեջներդ չարթնացավ: Զայնիս ելևէջների, հարցադրման ոճի առումով, որևէ բան, թեկուզ աղոտ չնշմարվեց, ասենք, չհիշեցիք. «Լավ չես ապրելու, Սերգո ջան»: Հիշեցիք: Բա որ Առաջինը ասում էր: Ինչու չլսեցիք, չլսեցիք նրան: Հիշեք: Մոռացկոտ եք: Մոռացաք ցեմենտի գողերին, ասֆալտի ֆիդայիններին, Աղետի գոտու թալանչիներին, մոռացաք զթության ալանթալանը, մոռացաք, թե ինչպես ձեր ոսկեհատ ցորյանի մի մասը շաղ տվեցիք հանուն Արցախի: Փառք Աստծո, մեր աչքի լույսը՝ Արցախը, անկախ մեր բամբասանքից, մեր անզոր չարությունից, ծլում ու ծաղկում է: Մեր ժողովրդի մի հատվածը, որի ծննդավայրն է ընդամենը, իսկ Հայրենիքը՝ Հայաստանը, և Աստված կպատժի բոլոր նրանց, ովքեր այլ ձևակերպում են տալիս այս պարզ ճշմարտությանը՝ մեր փոքրածուն բաժանելով հայաստանցիների և ղարաբաղցիների, հայաստանցիների և ախպարների, հայաստանցիների և փախստականների, նրանց, ով կոտորակում է Հայոց Աշխարհը:

Մեր կարգախոսը մեկն է՝ դեպի Երկիր, դեպի Ազատ, Անկախ և Միացյալ Հայաստան:

***Ալվարդ ՊԵՏՐՈՍՅԱՆ***

20➲

շատ ներդրումներ ենք արել Հայաստանում: Կարծում եմ, որ Եվրոպա դուրս կգանք նրանով, ինչն ամենալավն ենք անում՝ առևտրի կենտրոններով: Որպես տարբերակ՝ քննարկում ենք հյուրանոցային ոլորտը:

***– Ի՞նչ փոփոխություն կկրի Ձեր կազմակերպությունը հինգ տարի անց:***

– Միայն դեպի լավը: Կեռապատկենք շըրջանառությունը: Ոչինչ առայժմ վաճառել չենք պատրաստվում, ծրագրում ենք գնել:

***– Բացի շահույթ ստանալուց, բիզնեսում Ձեզ համար կա՞ն այլ խթաններ:***

– Դեռ երիտասարդ տարիներին, երբ ես հրապուրված էի ֆուտբոլով, հասկացա, որ հաջողությունը երբեմն կարևոր հասկացություն է, բայց միշտ՝ հարաբերական: Գոլ խփում է միայն այն խաղացողը, ով լավ գիտի իր հակառակորդին, խաղին մոտենում է տեխնիկապես և նվիրվում է նրան ամբողջ հոգով: Հիմա ես ավելի հազվադեպ եմ դաշտ դուրս գալիս, բայց յուրացված կանոններն օգտագործում եմ բիզնեսում:

***Ռեգինա ՍԱԴԻԿՈՎԱ, Մարիա ՍԻՄՈՆՈՎԱ***

## Շիրազը միակն է

Մեծն Շիրազը հրավիրված է լինում հարսանիքի: Հանկարծ աղմուկ է բարձրանում, թե հարեւան շինությունն այրվում է: Մարդիկ դուրս են նետվում սրահից եւ հավաքվում բակում: Մի կուսակցական մոտենում է Վարպետին ու ասում.

– Գիտե՞ս, որ մենք՝ ընկեր կոմունիստներով, վերջում դուրս եկանք, իսկ դուք, փաստորեն, այդքան մտահոգվեցիք ձեր կյանքի համար:

– Իհարկե, – պատասխանեց Շիրազը, – կոմունիստները շատ են աշխարհում, իսկ Շիրազը միա՛կն է:

## Աշխարհի ամենահարուստ մարդը ծագումով հայ է

Ըստ գիտնականների հաշվարկների՝ բոլոր ժամանակների ամենահարուստ մարդը 14-րդ դարում մեծ հզորության հասած Մալիի կայսր Մանսա Մյուզան է:

Իսկ մեր ժամանակների ամենահարուստը, համաձայն «Ֆորբս»-ի, մեքսիկացի մագնատ Կարլոս Սլիմն է (ծագումով հայ՝ համաձայն ֆրանսիական աղբյուրների):

Բայց շուրջ 96 միլիարդ դոլար կազմող նրա հարստությունը համեմատելի չէ աֆրիկացի կայսեր կուտակած հարստության հետ: Մանսա Մյուզան, ըստ Celebrity Net Worth-ի հաշվարկների, ունեցել է 400 միլիարդ դոլար արժողության սեփականություն:



Կարլոս Սլիմ



Մանսա Մյուզան

*Աղբյուրը՝ entrevue.fr*

«Այս ո՞ւր ենք գնում: Հայաստանը տառապում է. ամեն օր, օր-օրի Հայաստանը դատարկվում է: Շատ չի անցնի, երբ Հայաստանը կդառնա մի դատարկ խեցի... Ո՞ւմ է դա ձեռնտու: ԸՆԴԱՄԵՆԸ ԵՐԵՔ ՄԵԾԱՀԱՐՈՒՍՏ ԱՎԱԶԱԿԻ՞, ԵՐԵՔ ՄԱՖԻՈԶԻ՞:
Իսկ հարյուր հազարավոր խեղճ մարդիկ ցրված են աշխարհով մեկ... Այս ամենն ինձ մտահոգում է եւ անհանգստացնում:
... Ես քաղաքական գործիչ չեմ, ես քաղաքականությունից շատ բան չեմ հասկանում, բայց մի բան հաստատ գիտեմ՝ մենք ունենք մի դժբախտ երկրի փոքր կտոր, որը երկրորդ անգամ է մահանում»:

*Շարլ ԱԶՆԱՎՈՒՐ*

## Սպիտակ ջարդ՝ 100-րդ տարելիցի նախօրեին



Հայաստանի անկախության ողջ ընթացքում արտագաղթը դադարել է միայն 2004-2006 թվականներին: Սրանք այն տարիներն են, երբ Հայաստանում արձանագրվում էր երկնիշ տնտեսական աճ: (Լուսանկարը՝ Ֆոտոլուրի)

Ազգային վիճակագրական ծառայության հրապարակած տվյալներով՝ 2013-ին Հայաստանից հեռացել և չի վերադարձել ավելի քան 31000 քաղաքացի: Սա նշանակում է, որ ամեն Աստծո օր «Ապահով Հայաստանից» (Սերժ Սարգսյանի նախընտրական կարգախոսն էր մեկ տարի առաջ կայացած նախագահական ընտրություններում) արտագաղթում է 90 հայ կամ ավելի քան 20 ընտանիք:

Երկրի իրական վիճակը բնութագրող ամենից օբյեկտիվ ցուցիչներից գլխավորը միգրացիան է՝ քաղաքացիների տեղաշարժը: Սերժ Սարգսյանի նախագահության վեց տարիներին, ըստ պաշտոնական տվյալների, Հայաստանից արտագաղթել է 213000 քաղաքացի կամ Հայաստանի Հանրապետության բնակչության շուրջ 8 տոկոսը:

Սերժ Սարգսյանը և նրա ղեկավարած Հանրապետական կուսակցությունը 2008-ի նախագահական ընտրություններում ընտրել էին «Առա՜ջ, Հայաստան», 2012-ի խորհրդարանական ընտրություններում՝ «Քե՛զ համար, Հայաստան», իսկ 2013-ի նախագահական ընտրություններում՝ «Ապահով Հայաստան» կարգախոսը:

Ահա պատկերը, թե որքան մարդ է արտագաղթել Սարգսյանի նախագահության տարիներին.

2008 թ.՝ 23000, 2009 թ.՝ 25000, 2010 թ.՝ 47000, 2011 թ.՝ 44000, 2012 թ.՝ 43000, 2013 թ.՝ 31000:

2013-ին արտագաղթի չափերը փոքր-ինչ նվազել են, սակայն 31 հազարը ևս մեծ թիվ է: Դա Հայաստանի բնակչության ավելի քան 1 տոկոսն է:

Եթե Հայաստանը չունենար թշնամաբար տրամադրված հարևաններ, գուցե արտագաղթի թեման այդքան օրհասական չլիներ: Առաջիկա տարիներին Հայաստանը լուրջ խնդիր է ունենալու բանակի համալրման հարցում: Քսանհինգ տարի առաջ՝ Խորհրդային Միության փլուզման նախօրեին, Հայաստանի բնակչության թիվը շուրջ 3,5 միլիոն էր, իսկ Ադրբեջանի բնակչությունը՝ շուրջ 7 միլիոն: Այսօր Հայաստանի բնակչությունը մոտենում է 2,5 միլիոնին, իսկ Ադրբեջանինը շուտով կհասնի 10 միլիոնի:

Հայաստանից շարունակվող արտագաղթի հետ մեկտեղ տեղի է ունենում հանրապետության ծերացում: Արտագաղթում է հիմնականում երիտասարդ կամ միջին հասակի աշխատունակ բնակչությունը: Որպեսզի հասկանալի լինի, թե ինչպես է ծերանում Հայաստանը, բերենք ևս մի քանի վիճակագրական տվյալներ: Այսպես, եթե 1989-ին՝ Խորհրդային Միության փլուզման նախօրեին, Հայաստանում ծնվել է շուրջ 80000 երեխա, ապա 2013-ին՝ շուրջ 42000: Ահագնացող չափերով նվազում է նաև ամուսնությունների թիվը: 2013-ին գրանցվել է ընդամենը 18000 ամուսնություն:

Վերջերս վարչապետ Տիգրան Սարգսյանը Հայաստանի տնտեսական աճը որակել էր «շինարարական փուչիկ»՝ առաջ բերելով երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարյանի հրապարակային զայրույթը: Անկախ Քոչարյանի հանդեպ վերաբերմունքից՝ փաստ է, որ նրա նախագահության տասը տարիներից երեքում ոչ միայն դադարել է արտագաղթը, այլև գրանցվել է ներգաղթ:

2004-ին Հայաստան է վերադարձել 2000, 2005-ին՝ 13000, 2006-ին՝ 22000 մարդ: Ընդհանուր առմամբ՝ այդ երեք տարիներին տուն է վերադարձել շուրջ 37000 մարդ:

Քոչարյանի նախագահության մյուս յոթ տարիներին Հայաստանից արձանագրվել է արտագաղթ, ճիշտ է՝ շատ ավելի փոքր ծավալներով: 1998-ին արտագաղթը կազմել է 24000, 1999-ին՝ 7000, 2000-ին՝ ավելի քան 57000, 2001-ին՝ ավելի քան 60000, 2002-ին՝ գրեթե 3000, 2003-ին՝ 10000: 2004-2006 թթ. շուրջ 37000 ներգաղթից հետո 2007-ին՝ Քոչարյանի նախագահության վերջին տարում, Հայաստանից արտագաղթը կազմել է ընդամենը 3000 մարդ:

Ընդհանուր առմամբ, Քոչարյանի նախագահության տասը տարիներին Հայաստանից արտագաղթը կազմել է գրեթե 130000: Սերժ Սարգսյանի նախագահության վեց տարիներին, ըստ պաշտոնական տվյալների, Հայաստանից արտագաղթել է շուրջ 213000 քաղաքացի:

Ո՞րքան է կազմել արտագաղթը առաջին նախագահ Լևոն Տեր-Պետրոսյանի նախագահության տարիներին՝ 1992-1997 թթ.: Տեր-Պետրոսյանը ընտրվել է 1991-ի հոկտեմբերին, իսկ պաշտոնը ստանձնել՝ նոյեմբերի կեսերին, հետևաբար՝ 1991-ի և դրան նախորդող տարվա տվյալները կներկայացնենք առանձին:

1992-1997 թթ. Հայաստանից արտագաղթը կազմել է 586000, ինչը չափազանց մեծ թիվ է: Սակայն պետք է նկատի ունենալ, որ արտագաղթի նման ծավալները պայմանավորված էին ոչ միայն այն հանգամանքով, որ Հայաստանը պատերազմի, մթի ու ցրտի տարիներն էր ապրում, այլ նաև նրանով, որ արտագաղթածների մի ստվար հատված Հայաստանի քաղաքացիներ չէին: Նրանք Խորհրդային Ադրբեջանից մազապուրծ փրկված հայեր էին, որոնք ժամանակավոր ապաստան գտան Հայաստանում, սակայն հետագա մի քանի տարիներին հեռացան հանրապետությունից՝ հիմնականում Ռուսաստան:

1990-ին Հայաստան ժամանածների և Հայաստանից հեռացածների հարաբերակցությունը կազմել է 376000: Այսինքն՝ այդ տարվա ընթացքում Հայաստանի բնակչությունն ավելացել է 376000-ով: Մեկ տարվա ընթացքում, անգամ ամենաբարձր ծնելիության պայմաններում, չէր կարող բնական աճը կազմել 376000: Այս թվի մեջ ավելի քան 300000-ը Ադրբեջանից արտաքսված հայությունն է: 1991-ին Հայաստանից արտագաղթել է շուրջ 300000 մարդ: Այսպիսով, Ադրբեջանից ստիպողաբար Հայաստան տեղափոխված հայությունը գրեթե ամբողջությամբ լքեց Հայաստանը:

Հայաստանում արտագաղթի ամենամեծ ծավալը գրանցվեց 1992-1994 թթ., որոնք ճշգրտորեն համընկնում են արյունալի պատերազմի, ցրտի ու մթի տարիներին: 1992-ին Հայաստանից

→23

**Տ. Ոսկան արք. Գալփակյան. «Երբ գաք այստեղ, համբուրեցէ՛ք այս հուշարձանը, հավատալով, որ համբուրում եք ճակատը ամեն մեկ ԱՍԱԼԱ-ի նահատակի»:**

**Տ. Սեպուհ արք. Չուլջյան. «ԱՍԱԼԱ-ի նահատակները մեր ազգի իրական հերոսներ են, և պետք է որ մեր երկրի յուրաքանչյուր քաղաքում և գյուղում, ի հիշատակ այդ տղաների հուշակոթողներ կանգնեցվի, որպեսզի մեր նոր սերունդը իր երկրում գլուխը բարձր պահի, ես այս տղաներին համարում եմ որպես իսկական նահատակներ»:**

# Նորագույն ազգային ազատագրական պայքարին նվիրված Հուշակոթողի հանդիսավոր բացումը Վանաձորում

Կիրակի, հունվարի 26-ին, Վանաձորի Սբ. Աստվածածին եկեղեցում, նախագահությամբ Գուգարց թեմի առաջնորդ Տ. Սեպուհ արք. Չուլջյանի, Տ. Ստեփանոս քհն. Մարգարյանի ձեռամբ և ներկայությամբ Սբ. Էջմիածնի ավագ միաբան Տ. Ոսկան արք. Գալփակյանի, մատուցվեց Սբ. Պատարագ, ի հիշատակ Հայաստանի ազատագրության հայ գաղտնի բանակի (ՀԱՀԳԲ – ԱՍԱԼԱ) զոհված ազատամարտիկների:

Այնուհետ Տեր Ոսկան արք. Գալփակյանի նախագահությամբ կատարվեց հոգեհանգստյան արարողություն, և ապա եկեղեցու նահատակաց պուրակում տեղի ունեցավ ԱՍԱԼԱ-ի նահատակների հիշատակին կանգնեցված հուշակոթողի բացումը, ուր օրվա առիթով իրենց խոսքն ասացին Սրբազան Հայրերը, հնչեցին Երկրապահ կամավորական միության (ԵԿՄ) անդամների կողմից երախտիքի խոսքեր, ԱՍԱԼԱ-ի «ՎԱՆ» գործողության հրամանատար Վազգեն Սիսլյանի խոսքը և Հայկական Ժողովրդային Շարժման Երևանի ներկայացուցչության պատգամը:

Սեբուհ Սրբազանն իր խոսքում նշեց, որ «Հայ գաղտնի բանակի նահատակները մեր ազգի իրական հերոսներ են, և պետք է, որ ոչ միայն այս եկեղեցու տարածքում, այլ մեր երկրի յուրաքանչյուր քաղաքում և գյուղում, ի հիշատակ այդ տղաների հուշակոթողներ կանգնեցվի, որպեսզի մեր նոր սերունդը տեսնելով և ճանաչելով այդ ամենը ոգևորվի, հպարտանա և իր երկրում գլուխը բարձր պահի: Ես այս տղաներին համարում եմ իսկական նահատակներ, որոնք հերոսաբար մարտնչեցին և իրենց կյանքը զոհաբերեցին այս սուրբ ճանապարհին»:

Տ. Ոսկան արք. Գալփակյանը ասաց. «Այս րոպեն մեզ համար հպարտանքի րոպե է, որովհետև Հայաստանի տարածքին երկրորդ հուշարձանն է, հետ Եռաբլուրի հուշարձանի, որ կանգնում է այն նահատակների հիշատակին, որոնք կոչվում են Հայաստանի ազատագրության հայ գաղտնի բանակի զինվորներ»:

Սրբազան Հայրը շեշտելով, որ «գերագույն հպարտությունը որևէ մարդ կարող է ունենալ, եթե իր անձը զոհում է Հայրենիքի համար», – հավելեց. «Այս հուշարձանը հպարտության շարժառիթ է Վանաձորի հայ ժողովուրդի համար»:

Գալփակյան սրբազանն ապա իր




երախտագիտությունը հայտնելով այն վանաձորցիներին, որոնք հղացան և կառուցեցին հուշարձանը ու նաև Գուգարաց թեմի առաջնորդ Սեպուհ սրբազանին, որ օրհնեց հուշարձանը եկեղեցու բակի մեջ, ասաց. «Սա ոչ թե միայն քար է, սա ճակատն է մեր ամբողջ նահատակներուն, որոնք նահատակվեցան հայ ժողովրդի Դատի համար» և խոսելով ԱՍԱԼԱ-ի մասին հավելեց. «ԱՍԱԼԱ-ն ոչ միայն բանակ է, այլ նաև գաղափարախոսություն: Գաղափարախոսություն, որով յուրաքանչյուր հայ մարդ պետք է դաստիարակի իր զավակը: Դաստիարակի, որ մենք իրավունք ունենք, որ մեր իրավունքը, մեր Դատը արդար է և պիտի չխնայենք այդ իրավունքին հասնելու համար թեկուզ մեր կյանքը, այլապես մենք ամբողջ տանուլ տված կլինենք մեր պատմությունը: Մեր պատմությունն է Վանը, մեր պատմությունն է Սիսը, մեր պատմությունն է Էրզրումը: Չենք կարող մոռանալ և պիտի չմոռանանք»:

Սրբազան Հայրն իր խոսքի ավարտին հորդորեց բոլորին. «Երբ գաք այստեղ, համբուրեցէ՛ք այս հուշարձանը, հավատալով, որ համբուրում եք ճակատը ամեն մեկ ԱՍԱԼԱ-ի նահատակի»: Նա եզրակացրեց. «Մեր ներկա հայրենիքը մեր իրական հայրենիքի մի փոքր մասն է: Հայ ժողովուրդը պիտի շարունակի ապրել դարեր, եթե պետք է, այն հավատքով, որ ինքը կհասնի այն արդարության, որ պետք է աշխարհը և Թուրքիան հատուցի մեր ժողովուրդին»:

ԱՍԱԼԱ-ի «ՎԱՆ» գործողության հրամանատար Վազգեն Սիսլյանն իր խոսքում ասաց. «Շատ կարևոր երևույթ է, որ մեր նահատակ ընկերները, ինչպես Երևանում՝ Եռաբլուր, նաև այստեղ ունեցան իրենց հուշակոթողը»:

Նա նշեց. «1975 թվականը հայերու համար եղավ պահանջատիրության հիմքը, սկիզբ դնելու տարի և այնուհետ Ապրիլի 24-ը ՍԳՈ ՕՐԻՑ վերածվեց ՊԱՀԱՆՋԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՕՐՎԱ», – և եզրակացրեց, որ Մենք այս հավատքի, հպարտության և պայքարի ջահը փոխանցում ենք նոր սերնդին:

Հայկական ժողովրդային շարժման Երևանի ներկայացուցչության պատգամն փոխանցեց Ալֆրեդ Նավասարդյանը, ուր ի մասնավորի ասվում էր «Այսօր Վանաձորում մեզ հետ է աշխարհի տարբեր ծայրամասերում գտնվող հայ երբեմնի այն երիտասարդ սերունդը, որն իր երիտասարդական հանգիստը, ընտանեկան ջերմ անկյունը, ուսումը, շատ անգամ առողջությունը, ապագան և կյանքը զոհեց, որպեսզի վերակենդանացվի և ապրի ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՀԱՆՋԱՏԻՐՈՒԹՅՈՒՆԸ»:

Նա հավելեց. «Վանաձորում տեղադրված այս ժայռաբեկորը հայության հերոսական կամքի վկայությունն է, խտացված պատմությունը: Ժայռաբեկորը հայացք ունի ոչ միայն դեպի մոտիկ անցյալի հերոսական էջերը, այլ դեպի ԱՊԱԳԱ, դեպի պատմության էջեր շրջող ԱԴԱՄԱՆԴՅԱ ՈԳՈՒ վերակենդանացումը»:

Պատգամն եզրակացնում էր. «1975-ից սկիզբ առած գործը դեռ չի ավարտվել: Այդ սերնդի անցած ճանապարհը մեր սերնդի այսօրը և գալիք սերնդի ապագան է դառնալու»:

Ա. Նավասարդյանը վերջում ՀԺՇ-ի անունից շնորհակալություն հայտնվեց հուշակոթողի կառուցման գաղափարը հղացողին և այն իրականացողներին:

Հուշակոթողի բացմանը ներկա էին ՀՀ Պաշտպանության Նախարարության զորամասերից զինվորներ, Վանաձորի Երկրապահ կամավորական ջոկատի ներկայացուցիչներ և պատանի երկրապահներ, ԱՍԱԼԱ-ի նախկին մարտիկներ և համակիրներ, մտավորականներ և հոծ թվով վանաձորցիներ:

Հուշակոթողը հղացվել, կառուցվել և տեղադրվել է Պողոս Հակոբյանի, Ռազմիկ Մադոյանի և քանդակագործ Արա Հովհաննիսյանի անխոնջ աշխատանքներով:

***«Հայաստան» լրատու ցանց, Վանաձոր, 28 հունվարի, 2014 թ.***

22Ջ

հեռացել է ավելի քան 228000, 1993-ին՝ 141000, 1994-ին՝ գրեթե 128000 քաղաքացի: Պատերազմի ավարտից հետո արտագաղթի ծավալները կտրուկ նվազեցին: 1995-ին Հայաս-տանից արտագաղթել է ավելի քան 37000, 1996-ին՝ ավելի քան 20000, 1997-ին՝ ավելի քան 31000 մարդ:

Հայաստանի և Սփյուռքի օրակարգի թիվ մեկ խնդիրը պետք է լինի արտագաղթի թեման: Անգամ 2015-ին Հայոց ցեղասպանության 100-րդ տարելիցի տարում, համայն հայության թիվ մեկ թեման պետք է լինի արտագաղթը և դրա առաջն առնելու որոնումները: Եթե 2015-ին Հայաստանը կարողանա դադարեցնել արտագաղթը, դա կլինի մեկուկես միլիոն նահատակների հարգանքի տուրքը:

Ես այդպես եմ մտածում: Իսկ ի՞նչ եք մտածում դուք:

*Թաթուլ ՀԱԿՈԲՅԱՆ*

# Торгующий смертью армянин

Когда 6 октября 2011-го в частной клинике Майами перестало биться сердце 82-летнего Саркиса Соганаляна, очень многие сотрудники внешней разведки США и Пентагона с облегчением вздохнули. Он слишком много знал, и судьба слишком многих людей зависела от него. Но словоохотливым Соганалян никогда не был. Он предпочитал делать дело, а не говорить. А дело у него было более чем серьезное. Он торговал оружием. Саркис Соганалян считался одним из крупнейших в мире воротил оружейного бизнеса.

«Торговец смертью». Это прозвище закрепилось за ним на всю жизнь. История жизни этого неординарного человека легла в основу голливудского фильма. Он стал прототипом главного героя снятого в 2005-м году знаменитого блокбастера «Оружейный барон», роль которого сыграл Николас Кейдж. Список клиентов Соганаляна поражает. Тут и иракский диктатор Саддам Хусейн, и ливанский правитель Муаммар Каддафи, и курдский лидер Джалал Талабани, и никарагуанский генерал Анастасио Сомоса, и президент Перу Альберто Фухимори... Он торговал с Соединенными Штатами и Советским Союзом, с Францией и Болгарией, Аргентиной и Колумбией, Эквадором и Гватемалой, Ливаном и Сирией, Египтом и Мавританией... Вооружал пакистанских пуштунов, защищал христиан Палестины, содействовал кубинской контрреволюции. С его мнением считались глава Пентагона Каспар Уайнбергер и король Иордании Абдалла Второй, его ненавидели премьер-министр Великобритании Маргарет Тэтчер и духовный лидер Ирана аятолла Хомейни, его побаивались революционер Че Гевара и турецкий президент Кенан Эврен, за его голову обещали немалые деньги глава Палестины Ясир Арафат и вожак «Серых волков» Алпарсан Туркеш. О нем говорили добрые слова Джордж Буш-старший, мать Тереза и Католикос Вазген. Он был одним из богатейших людей планеты, имел несколько собственных самолетов, но умер в нищете.

Родился Саркис Соганалян 6 февраля 1929 года в городе Искандерун, тогда еще входившем в состав Сирии. Когда Запад закрыл глаза на аннексию этих земель Турцией, семья переехала в Алеппо, а затем в Бейрут. Отец Соганаляна Акоп был потомственным торговцем луком, за что его и прозвали «соханал», что в переводе означает «покупатель лука». Оттуда и фамилия. Но Саркис предпочел торговать совсем другим продуктом. Его страсть к оружию проявилась еще в девятом классе, когда он нанялся грузчиком и таскал ящики на французской военной базе. «В 1944 году я прогуливал школу и работал во французской танковой дивизии. Так что я вырос вокруг оружия. Будучи армянином, я был привыкшим бороться за выживание. Ведь мы пережили турецкий геноцид. Все, что я тогда хотел, – это было оружие», – рассказал Соганалян в едва ли не единственном своем интервью, которое он дал в марте 2001 года американскому изданию «Fronteline».




Афиша фильма «Оружейный барон».

Начальный капитал очень многих крупных бизнесменов имел преступное происхождение. У Соганаляна было то же самое. Прежде чем заняться смертоносным бизнесом на легальном уровне, он не гнушался контрабандой. На втором году успешного промысла в Палестине его засекла английская контрразведка. Срок отбывал в тюрьме Хайфы. Он умудрился подкупить нужных людей и вышел на свободу уже через полгода. И опять столкнулся с проблемами. В 1950 году арабские шейхи, приняв партию поставленного им товара, отказались заплатить обещанные 150 тысяч долларов. Долги пришлось покрывать самостоятельно. Через год еще один инцидент: на границе с Иорданией завязался бой с таможенниками. Саркис отстреливался пулеметами Дегтярева из собственного груза в 70 ящиков. Чудом остался жив. Словом, первый свой миллион Соганалян заработал не только потом, но и кровью.

Когда в 1975 году в Ливане вспыхнула гражданская война, он уже на собственные средства закупал громадные партии оружия и переправлял их по себестоимости бейрутским соотечественникам, организовавшим отряды самообороны для защиты армянских кварталов. Его услугами заинтересовались также вооруженные силы маронитов и других христианских общин. Им он продавал оружие уже с выгодой для себя. Бизнес вышел из подполья лишь после того, как ему взялись покровительствовать американские спецслужбы. Агенты ЦРУ давно следили за молодым амбициозным армянином и сочли, что он может быть полезным Соединенным Штатам. Соганаляну предложили американское гражданство и обширные возможности. Связи влиятельного оружейного дилера в Пентагоне использовали для создания политического плацдарма в арабских странах, а также для сбыта излишков морально устаревшей военной техники. Дешево продавать старое оружие странам Ближнего Востока было куда выгоднее, чем его утилизировать.

Но самое странное то, что, работая на американцев, Соганаляну удавалось сохранять деловые отношения и с русскими. Он продавал советское оружие в Сирию и Египет, чего не скрывал от американцев. В интервью обозревателю «Fronteline» Уильяму Киршнеру Соганалян об этом вспоминал: «Русские не хотели сами пачкать руки. У нас была наработанная схема, которая позволяла мне получать советское оружие в Болгарии. Не было типа оружия, которое я не смог бы получить. Русские знали, что я работаю в тесном контакте с правительством США, но их это не отталкивало. Они хотели сохранить отношения, так как нуждались в иностранной валюте, в наличных деньгах. Это был для них хороший шанс». Что же касается американцев, то контакты Саркиса Соганаляна с Москвой их не смущали. «Американцы знали, что я делал каждый час, каждую минуту. Когда я пил стакан воды, они знали, какая это была вода. Я не пытался скрывать от американцев ничего», – рассказывал «торговец смертью». Соганалян давал понять, что все, что он делал, происходило в действительности не только с ведома, но и с одобрения Вашингтона: «Если я лоялен по отношению к кому-то, то я и он – одна команда. Конечно, я консультируюсь с правительством США до подписания контракта с новым клиентом».

Соганаляну ничто бы не грозило, если б американская политика не была столь переменчивой. Он успешно вооружал Саддама, пока интересы Вашингтона требовали усиления Ирака в его борьбе против Ирана. Армянский торговец был частым гостем багдадского диктатора, которому мог угодить поставкой самого экзотического американского оружия. Сумма контрактов, заключенных им в Ираке, исчислялась миллиардами долларов. Поставки были легальными. За каждый заработанный доллар Саркис Соганалян уплачивал подоходный налог. Но планы Хусейна по захвату Кувейта сыграли для его поставщика роковую роль. После того как Саддам повернул оружие против американцев и их партнеров, Соганаляна обвинили в превышении полномочий. Ему припомнили то, что кроме американского оружия он поставлял Ираку



Саддам пробует гранатамет из партии, купленной у Соганаляна.

⊃25

